Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Հայաստան»
ԵՐԵՎԱՆ 1936

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6




ՀԿ(բ)ԿԿ հրատարակչություն—խ. Հայաստանի
ՅԵՐԵՎԱՆ — 1936

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագիր՝ Գինո Շաղգամյան
Պատ. քարտուղար՝ Գ. Հարությունյան
Սրբ. Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատարակություն № 2. Պատ. № 1518
Գլավլիտի լիազոր, № 2121
Տիրաժ 7000

ՊԵՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ. ՅԵՐԵՎԱՆ

# ԸՆԿ. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ՃԱՌԸ

## ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Արտասանած Խորհուրդների Համամիութենական 8-րդ արտակարգ Համագումարում:**

(Ընկեր Մոլոտովի յերևալն ամբիոնի վրա դիմավորվում է ամբողջ դահլիճի բուռն ովացիայով: Բոլորը ոտքի յեն կանգնում: Բացականչություններ.— «ընկեր Մոլոտովին ուռա», «կեցցե ընկեր Մոլոտովը, ընկեր Ստալինի ամենամերձավոր զինակիցը»: Հուժկու «ուռան» և յերկար ժամանակ չլռող ծափահարությունները շարունակվում են մի քանի րոպե):

### I. ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՔՆ Է

*Այն բանից հետո, յերբ անցել է Նոր Սահմանադրության՝ իր թափով չտեսնըված համաժողովրդական քննարկումը և*

լավել է ընկեր Ստալինի պատմական զեկուցումն այս համագումարում, մեր յերկրի աշխատավորները լիակատար հիմք ունենալով կարող են ասել՝ «մենք լավ գիտենք, թե ինչ է նշանակում Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության նոր Սահմանադրությունը, ինչ է նշանակում մեր ստալինյան Սահմանադրությունը» (ծափահարություններ)։

Այդ՝ հաղթանակած սոցիալիզմի Սահմանադրությունն է։ Դրանով է վորոշվում նրա բովանդակությունը։

ԽՍՀՄ-ի մինչև այժմ գործող Սահմանադրությունը վերաբերում է 1924 թվականին։

Այն ժամանակ մենք դեռ չեյինք կարող խոսել սոցիալիզմի հաղթանակի մասին՝ մեր յերկրում։ «Ո՞վ՝ ո՞ւմ» հարցը դեռ լուծված չեր։ Սոցիալիստական տնտեսությունը վերելքի շրջանումն եր գտնվում և նրա գերակշռությունն արդեն նշվել եր, բայց դեռ աճում եյին նաև կապիտալիստական տարրերը, իսկ գյուղում տիրապետում եր մանր սեփականատիրական տնտեսությունը՝ ջախջախված կապիտալիզմի առավել խոշոր մնացորդը։ Ուստի և մինչև այս համագումարը գործող Սահմանադրությունն արտացոլում եր այնպիսի դրություն, վորը շատ բանով տարբերվում եր ներկայիս դրությունից։

Խորհրդային Միության նոր Սահմանադրությունն ստեղծվում է այլ պայմաններում։

Մեր յերկրում արդեն լիովին տիրապետում է տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը, վերացված են չահագործող դասակարգերը, վոչնչացվել է մարդու շահագործումը մարդու կողմից, տեղի յե ունենում մասսաների բարեկեցության, կուլտուրականության ու սոցիալիստական գիտակցության բուռն վերելք։ Այդ բանը հենց իր արտացոլումը գտավ նոր Սահմանադրության մեջ։

Առաջին անգամն է, վոր յերկրի Սահմանադրությունը վորոշում է աշխատավորների ստեղծած սոցիալիստական հասարակության հիմքերը և նրա պետական կառուցվածքը։ Այսպիսին է «ստալինյան Սահմանադրությունը»։

Վորպեսզի հնարավորություն ստանայինք

մեր յերկրում կառուցելու նոր հասարակություն — մի հասարակություն՝ առանց մարդու կողմից մարդու շահագործման,— բանվորները, գյուղացիության հետ դաշն կնքած, պետք է հեղափոխական ճանապարհով տապալեյին կապիտալիստներին ու կալվածատերերին և հաստատեյին իրենց իշխանությունը — խորհուրդների իշխանությունը, պրոլետարական դիկտատուրան։ Կապիտալիզմից ազատագրվելու այլ ուղիներ պատմությունը չի տվել և ինչպես հայտնի յե՝ չի տալիս նաև այժմ։ Բայց տապալելով կեղեքիչներին և հետ մղելով իշխանության գլուխը վերադառնալու նրանց բազմաթիվ փորձերը, աշխատավորները, ինչպես յուրաքանչյուրն էլ այժմ կարող է տեսնել, վատ չօգտագործեցին իրենց համար նոր, իսկապես յերջանիկ կյանք ստեղծելու հնարավորությունը։

Սահմանադրությունը ծրագիր չէ, չի կարելի Սահմանադրությունը շփոթել ծրագրի հետ,— ասում եր այստեղ ընկեր Ստալինը։ Յեվ իսկապես, Նոր Սահմանադրությունը խոսում է այն մասին, ինչ արդեն նվաճված և իրականացված է մեր յերկրում։ Նա ծրագրային հարցեր չի դը-



նում։ Նա ձևակերպում և օրենսդրական կարգով հաստատում է բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության մեծ նվաճումները։

Սահմանադրությունը սոցիալիզմը հայտարարում է մեր պետության հիմք։ Նա միաժամանակ հաստատում է այն, ինչ առաջ է յեկել մեր պետության մեջ սոցիալիզմի հաղթանակի հիման վրա, կատարելագործելով պետական կարգի վորոշ ձևերը։

Բայց մի՞թե փաստ չէ, վոր նոր Սահմանադրության, սոցիալիզմի Սահմանադրության հրապարակումը լայն մասսաների և մեր բոլորիս կողմից ընդունվեց վորպես ինչ վոր նոր բան տվող, վորպես ԽՍՀՄ-ի ժողովուրդների կյանքում նոր հեռանկարներ բաց անող։ Սահմանադրությունը միայն հանրագումարի բերեց սոցիալիստական հեղափոխության նվաճումները, միայն գրի առավ այն, ինչ մենք գործնականում ունենք, ինչ արդեն մեր ձեռքումն է։ Նա պարզ ու ճշգրիտ բառերով միայն ի մի ամփոփեց այն, ինչ ունեն ԽՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցած ժողովուրդները, առանց վորևէ դեկլարացիայի՝ ապացույ

մեր յերկրում կառուցելու նոր Հասարակություն— մի հասարակություն՝ առանց մարդու կողմից մարդու շահագործման. բանվորները, գյուղացիության հետ դաշն կնքած, պետք է հեղափոխական ճանապարհով տապալեյին կապիտալիստներին ու կալվածատերերին և հաստատեյին իրենց իշխանությունը— խորհուրդների իշխանությունը, պրոլետարական դիկտատուրան: Կապիտալիզմից ազատագրվելու այլ ուղիներ պատմությունը չի տվել և ինչպես հայտնի յե՝ չի տալիս նաև այժմ: Բայց տապալելով կեղեքիչներին և հետ մղելով իշխանության գլուխը վերադառնալու նրանց բազմաթիվ փորձերը, աշխատավորները, ինչպես յուրաքանչյուրն էլ այժմ կարող է տեսնել, վատ չօգտագործեցին իրենց համար նոր, իսկապես յերջանիկ կյանք ստեղծելու հնարավորությունը:

Սահմանադրությունը ծրագիր չէ, չի կարելի Սահմանադրությունը շփոթել ծրագրի հետ,— ասում էր այստեղ ընկեր Ստալինը: Յեվ իսկապես, նոր Սահմանադրությունը խոսում է այն մասին, ինչ արդեն նվաճված և իրականացված է մեր յերկրում: Նա ծրագրային հարցեր չի դը-



նում: Նա ձեվակերպում և օրենսդրական կարգով հաստատում է բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության մեծ նվաճումները:

Սահմանադրությունը սոցիալիզմը հայտարարում է մեր պետության հիմք: Նա միաժամանակ հաստատում է այն, ինչ առաջ է յեկել մեր պետության մեջ սոցիալիզմի հաղթանակի հիման վրա, կատարելագործելով պետական կարգի վորոշ ձևերը:

Բայց միթե փաստ չէ, վոր նոր Սահմանադրության, սոցիալիզմի Սահմանադրության հրապարակումը լայն մասսաների և մեր բոլորիս կողմից ընդունվեց վորպես ինչ վոր նոր բան տվող, վորպես ԽՍՀՄ-ի ժողովուրդների կյանքում նոր հեռանկարներ բաց անող: Սահմանադրությունը միայն հանրագումարի բերեց սոցիալիստական հեղափոխության նվաճումները, միայն գրի առավ այն, ինչ մենք գործնականում ունենք, ինչ արդեն մեր ձեռքումն է: Նա պարզ ու ճշգրիտ բառերով միայն ի մի ամփոփեց այն, ինչ ունեն ԽՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցած ժողովուրդները, առանց վորևէ դեկլարացիայի՝ ապագայի

մասին, ԽՍՀՄ-ի հետագա նպատակների մասին: Բայց մի՞թե փաստ չէ, որ այդ էլ նույնիսկ բավարար եղավ մեր սոցիալիստական հորիզոնն զգալիորեն լայնացնելու և միլիոնավոր ու միլիոնավոր հասարակ մարդկանց կարծես թե թևավորելու համար, մարդկանց, որոնք նոր Սահմանադրությունը դարձրել են կոմունիզմի գործի համար մղվող հետագա պայքարի մարտական դրոշը (ծափահարություններ):

Սահմանադրությունն ամփոփեց յերկրի էկոնոմիկայի մեջ կատարված վերակառուցման արդյունքները, ասելով, որ Խորհրդային Միության տնտեսական հիմքն են հանդիսանում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը, որն իր հերթին ապահովում է մեր յերկրի արտադրողական ուժերի այնպիսի զարգացում, որն իսկապես յերջանիկ կդարձնի ԽՍՀՄ-ի ժողովուրդների կյանքը: Սահմանադրության մատնանշումը մենատնտես գյուղացիների ու մանր տնայնագործների մասնավոր մանր տնտեսություն թույլ տալու մասին առանց ուրիշի



աշխատանքը շահագործելու իրավունքի, ինչպես նաև քաղաքացիների անձնական սեփականության ճանաչումը նրանց աշխատանքային յեկամուտների ու ունեցվածքի նկատմամբ, ոչ միայն չի հակասում մեր յերկրում տնտեսության սոցիալիստական ձևի ու սոցիալիստական սեփականության իշխող դրությանը, այլև միանգամայն պարտադիր լրացում է հանդիսանում տվյալ պայմաններում:

Մյուս կողմից, սոցիալիստական էկոնոմիկայի և սեփականության սոցիալիստական ձևերի հաղթությունը միայն ընդգծվում է այն փաստով, որ նույնիսկ Միության՝ դեռ վերջերս տնտեսապես ու կուլտուրապես ամենահետամնաց շրջաններում սոցիալիզմը հաղթանակ է տարել: Բավական է միայն ասել, որ մինչև անգամ ԽՍՀՄ-ի այն՝ մեր էկոնոմիկայում ոչ փոքր կարևորություն ունեցող շրջանները, որտեղ դեռ յերկու տասնյակ տարի սրանից առաջ տիրապետում էին մինչ-կապիտալիստական հարաբերությունները, որտեղ կապիտալիզմը նույնիսկ թույլ էր զարգացած, մինչև անգամ այդ շրջանները հիմնականում արդեն կանգնել են սոցիա-

ռուցվածքին, ապա նոր Սահմանադրությունն այստեղ խոշորագույն կատարելագործումներ է մտցնում: Պետական կառուցվածքի մեջ այդ նոր տարրերն ընթանում են սոցիալիստական դեմոկրատիզմի և Խորհրդային Միության ժողովուրդների հարաբերություններում իսկական ինտերնացիոնալիզմը բազմակողմանիորեն զարգացնելու ուղիով: Լիովին հենվելով սոցիալիզմի, վորպես ԽՍՀՄ-ի հիմքի, հաղթանակի վրա, դեմոկրատիզմի ու ինտերնացիոնալիզմի այդ նոր ձևերը նոր աստիճան են նշանակում թե մեկի և թե մյուսի զարգացման մեջ:

## II. ՄԵՐ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԸ ԴԵՊԻ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԸ

Խորհրդային հասարակակարգը ներծծված է դեմոկրատիզմով ավելի, քան վորևէ այլ հասարակակարգ: Խորհուրդների միջոցով բանվորներն ու գյուղացիները, այլ կերպ ասած՝ ժողովրդական մասսաները կառավարում են պետությունը: Խորհուրդները մարմնավորում են աշխատա-



վորների իշխանությունը, ժողովրդի իշխանությունը, մինչդեռ ամեն մի բուրժուական պետության մեջ իշխանության գլուխ է կանգնած տիրապետող դասակարգերի միայն արտոնյալ փոքրամասնությունը:

Յեվ այնուամենայնիվ նոր Սահմանադրությունն ընթանում է խորհրդային կարգի հետագա դեմոկրատացման ուղիով: Կարելի յե ասել, վոր նա ավարտում է ԽՍՀՄ-ի դեմոկրատացումը և ընդարձակելով բազան, ինչպես նաև կատարելագործելով պետական ձևերը, ամրապնդում է բանվոր դասակարգի դիկտատուրան մեր յերկրում, վորն ընկեր Ստալինի հայտնի արտահայտությամբ՝ «Լենինիզմի հիմնական հարցն է» հանդիսանում:

Խորհրդային նոր Սահմանադրությունը դեն է շպրտում այն սահմանափակումների մնացորդները, վորոնք պահպանվել եյին խորհրդային Սահմանադրության մեջ առաջին շրջանից, յերբ շահագործող դասակարգերի ազդեցությունն աշխատավորների վրա, առանձնապես գյուղում, արտահայտվում եր դեռ բավական լայն կերպով, իսկ խորհուրդները դեռ չեյին ամրապնդվել: Նա ընդհանուր, ուղղակի,

հավասար և գաղտնի ընտրություններ է սահմանում աշխատավորների բոլոր խորհուրդներում, ընդհուպ մինչև խորհրդային իշխանության բարձրագույն մարմինները: Նա հանում է ձայնազուրկների հարցը, քանի որ բոլոր քաղաքացիները, առանց բացառության, խորհուրդների մեջ ընտրելու և ընտրվելու իրավունք են ստանում: Նա վերացնում է խորհուրդների ընտրության ժամանակ բանվորների գյուղացիների հանդեպ մեզ մոտ գոյություն ունեցած առավելությունները, ԽՍՀ Միության բոլոր քաղաքացիների համար մտցնելով հավասար ընտրական իրավունք: Նա խորհրդային իշխանության միջին ու բարձրագույն մարմինների՝ մինչեվ այժմ գոյություն ունեցած բազմաստիճան ընտրությունները փոխարինում է անմիջականորեն իրենց՝ քաղաքացիների կողմից կատարվող ուղղակի ընտրություններով: Բաց ընտրությունների փոխարեն, քվեարկության մեծ ազատություն ապահովելու համար մտցվում են խորհուրդների գաղտնի ընտրություններ: Բոլշևիկյան կուսակցության կազմակերպությունների հետ միասին խորհուրդների համար թեկնածու-



ներ կառաջադրեն նաև մեզ մոտ գոյություն ունեցող բազմաթիվ անկուսակցական կազմակերպությունները: Սահմանադրությունը համաժողովրդական հարցում (ռեֆերենդում) է սահմանում այն դեպքերի համար, երբ այդ անհրաժեշտ կգտնվի ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի կամ միութենական հանրապետությունների մեկի կողմից:

Ընտրական սիստեմի այդ փոփոխությունները ցույց են տալիս, որ մենք վերցնում ենք մյուս պետությունների դեմոկրատիկ կառուցվածքում գոյություն ունեցող լավագույնը, փոխադրում ենք մեր երկիրը և գործադրում խորհրդային ուժտության պայմաններին համապատասխան: Դուրս է մնում միմիայն քաղաքական կուսակցությունների լեգալության իրավունքը, բացի կոմունիզմի կուսակցությունից: Մեր երկրում, որտեղ բացակայում են իրար հանդեպ թշնամական դասակարգեր, որտեղ բանվորներն ու գյուղացիները համախմբվել են Կոմունիստական կուսակցության շուրջը և որտեղ մյուս քաղաքական կուսակցությունները, ինչպես ցույց տվեց մեր ամբողջ փորձը, հանդիսանում

են միայն կապիտալիզմի ռեստավրատորների գործակալությունը, տեղ չի կարող լինել նրանց լեգալացման համար (աղմկալից ծափահարություններ):

Մեր ընտրական սիստեմի մասնանշված փոփոխությունները պետք է եվ ավելի բարձրացնեն մասսաների ակտիվությունն աշխատավորների խորհուրդների ընտրության ժամանակ: Հետաքրքրությունն ընտրությունների նկատմամբ անտարակույս կբարձրանա: Նոր սիստեմը կծառայի ինչպես խորհուրդների ընտրության, այնպես եվ խորհուրդների ամբողջ աշխատանքի հետագա աշխուժացմանը:

Այդ սիստեմը չի կարող թափ չտալ դեպքերի պոչից ընթացող թույլ կազմակերպություններին և չի կարող չհարվածել բյուրոկրատացածներին, մասսաներից կտրվածներին: Մյուս կողմից, այդ սիստեմը հեշտացնում է նոր ուժերի առաջքաշումը՝ առաջավոր բանվորներից, գյուղացիներից ու ինտելիգենտներից, վորոնք պետք է փոխարինեն հետ մնացած կամ չինովնիկացած տարրերին:

Ընտրությունների նոր կարգում չի բացառվում այն հնարավորությունը, վոր



ընտրվի վորևէ մեկը նաև թշնամի տարրերից, յեթե այստեղ կամ այնտեղ վատ լինի մեր ագիտացիան և պրոպագանդը: Սակայն այդ վտանգը վերջ ի վերջո պետք է ծառայի գործի օգտին, քանի վոր դա մտրակելու յե դրա կարիք ունեցող կազմակերպություններին և քնած աշխատողներին:

Այդպիսով, դեմոկրատիզմի լիակատար զարգացումն ապահովող ընտրական նոր սիստեմը պետք է օգնի մեզ բարելավելու պետական ապարատը, ընդարձակելու և նորացնելու ղեկավար խորհրդային կադրերը, բարձրացնելու հենց իրենց՝ կուսակցական կազմակերպությունների աշխատանքը մասսաների մեջ: Նշանակում է մեր գործը վոչ միայն չի տուժի, այլ զգալիորեն կշահի խորհուրդների ընտրության նոր կարգի իրականացմամբ:

Համեմատեցեք այս դրությունն իրենց սահմանադրություններով ապրող բուրժուական յերկրների դրության հետ:

Չկա բուրժուական այնպիսի յերկիր — վոչ միայն ֆաշիստական, — վորտեղ գոյություն չունենան պարլամենտների ու կոմունալ հիմնարկների ընտրությունների

իրավունքի մի շարք սահմանափակումներ, իսկ յերբեմն նաև՝ զանազան շատ սահմանափակումներ: Այդ վոչ վոք չի կարողանա ժխտել:

Այնտեղ գոյություն ունեն նաև սահմանափակումներ՝ ըստ սոցիալական-գույքային վիճակի: Իհարկե՝ հողատեր ունեվոր դասակարգերի և ընդդեմ քիչ ունեցողների:

«Գույքային ցենզ» գոյություն ունի, օրինակ, Անգլիայում, ԱՄՆ-ում, Ճապոնիայում: Անգլիայում այն անձինք, վորոնք ապրում են ընտրական մի շրջանում և ձեռնարկություններ ունեն մի այլ շրջանում, վայելում են նույնիսկ յերկու ձայն:

Նստակեցության ցենզ գոյություն ունի Ֆրանսիայում, ԱՄՆ-ում, Ճապոնիայում: Անհրաժեշտ է մի տեղում 6, 12 և նույնիսկ 24 ամիս ապրել՝ ընտրական իրավունք ստանալու համար: Կապիտալիստական յերկրներում տիրող մեծ գործազրկության պայմաններում այդ սահմանափակումների իմաստը պարզ է:

Բացի դրանից, գոյություն ունի այսպես կոչված «կրթական ցենզ» Անգլիա-



յում, ԱՄՆ-ում, Հունգարիայում: Յեվ այդ ցենզը ճարպկորեն օգտագործվում է հարուստների կողմից՝ ընդդեմ չքավորների:

Յերկրորդ՝ կապիտալիստական յերկրներում գոյություն ունեն ընտրական սահմանափակումներ ըստ ազգային-ռասսայական հատկանիշի:

Գերմանական ֆաշիստների հակասեմիտային քաղաքականությունը քաջածանոթ է: Գերմանիայում այնքան սանձարձակ են դարձել, վոր նրանց սև հարյուրյակային «հիմնական օրենքում» ասված է վոչ ավելի, վոչ պակաս, քան հետևյալը՝ «Հրեան չի կարող գերմանական կայսրության քաղաքացի լինել: Նա զրկվում է ձայնի իրավունքից քաղաքական հարցերում: Նա չի կարող պաշտոններ գրավել»:

ԱՄՆ-ում ծայրահեղության են հասցվել նեգրերի և հնդիկների դեմ ուղղված սահմանափակումները: Այդ տեղ նեգրերի նկատմամբ գործն այնպես է արված, վոր հարավային հինգ նահանգների 2,2 միլիոն նեգրերից ընտրություններին փաստորեն թույլատրվում է մասնակցել միայն 19 հազար հոգու:

Անգլիան նույնպես այդ ճանապարհով է ընթանում։ Մեծ Բրիտանիայի մեջ մըտնող Հարավ-աֆրիկյան միության մեջ ձայնի իրավունք ունեն 2,5 միլիոն սպիտակները, իսկ 5,5 միլիոն նեգրերը զուրկ են ձայնի իրավունքից։

Յերրորդ՝ գոյություն ունեն մեծ սահմանափակումներ կնոջ իրավունքի նկատմամբ։ Բավական է ասել, վոր կանայք զուրկ են ձայնի իրավունքից պարլամենտի ընտրությունների ժամանակ այնպիսի յերկրներում, ինչպիսիք են Ֆրանսիան, Բելգիան, Իտալիան, Շվեյցարիան, Հարավ-Սլավիան, Հունաստանը, Ճապոնիան, Արգենտինան։

Յես կհիշատակեմ նաև զինվորական ծառայողների իրավունքների սահմանափակումը։ Վոչ մի յերկրում, բացի Անգլիայից, վորտեղ բանակը մեծ չէ, զինվորական ծառայողները չունեն պարլամենտի ընտրություններին մասնակցելու իրավունք։ Բուրժուական բոլոր յերկրներում բուրժուական բանակների զինվորներն ու սպաները զուրկ են այդ հասարակ քաղաքացիական իրավունքներից։

Յես այլևս օրինակներ չեմ բերի ազգա-



բնակչության իրավունքների սահմանափակումների մասին, վորոնցով հարուստ են բուրժուական սահմանադրությունները։ Իսկ չէ՞ վոր այնտեղ քիչ չեն «դեմոկրատիայի» մասին աղաղակել սիրողները։

Մեր ընտրական սիստեմի լիակատար դեմոկրատացումը լավագույն պատասխանն է խորհրդային դեմոկրատիզմի ամեն տեսակ քննադատներին՝ բուրժուական դեմոկրատների և սոցիալ-դեմոկրատների բանակից։

Մի՞թե քիչ մեղադրանքներ են թափվել պրոլետարական դիկտատուրայի վրա ԽՍՀՄ-ում բուրժուական բանակի «դեմոկրատների» կողմից։ Չնայած աշխատավորների ամենալայն մասսաների կողմից խորհրդային իշխանության ակնհայտ պաշտպանությանը՝ այստեղ ու այնտեղ մեղադրանքներ են հարուցվել խորհրդային ռեժիմի թերի դեմոկրատիկության դեմ։ Նույնիսկ նախկին շահագործողների 2—3 տոկոսին ձայնից զրկելը, յերբ ապահովված է ազգաբնակչության մյուս 97—98 տոկոսի՝ ընտրություններին մասնակցելու իրավունքը, աշխատում եյին ներկայացնել վորպես դեմոկրատիկ իրավունքների մեծ պակասություն ԽՍՀՄ-ում։ Խորհրդային

սիստեմի բուրժուական քննադատների այդ ձեռնածությունները լավ հայտնի յեն:

Այժմ այդ բոլոր հարձակումներին ել ավելի ազդու պատասխան ե տալիս խորհրդային Սահմանադրությունը, վորն ավարտում ե ԽՍՀՄ-ի դեմոկրատացումը:

Մեծ Լենինը մեզ սովորեցրել ե, վոր «դեմոկրատիզմը խորհրդային իշխանության մեջ դիկտատուրային չի հակասում», վոր պրոլետարական դիկտատուրայի ամրացումը նշանակում ե իսկական դեմոկրատիզմի աճումը, մասսաների դեմոկրատիզմի, աշխատավորության դեմոկրատիզմի աճումը: Խորհրդային հանրապետության զարգացման յուրաքանչյուր նոր ետապում մենք տեսնում եյինք, վոր ավելի ու ավելի ամուր հաստատվում են մեր մեծ ուսուցչի խոսքերը: Այժմ ավելի, քան յերբևիցե, մենք տեսնում ենք պրոլետարական դիկտատուրայի հաղթության վրա հիմնված սոցիալիստական դեմոկրատիայի մասին յեղած մարքսիստական-լենինյան ուսմունքի ամբողջ ուժը և բուրժուական դեմոկրատիայի մարքսիստական-լենինյան քննադատության միանգամայն ճիշտ լինելը, մի դեմոկրատիա, վորը ծնված ուրից



սահմանափակված ե տիրապետող բուրժուական փոքրամասնության համար հաստատված դեմոկրատիզմի նեղ շրջանակներով:

Նոր Սահմանադրության ընդունումը՝ վկայում ե ԽՍՀՄ-ի աշխատավորների վըստահությունն իր ուժերի նկատմամբ:

Իսկապես, յեթե յերկրի ներսում մենք ջախջախեցինք դասակարգային թշնամուն և որեց որ ավելի յենք ամրացնում մեր սոցիալիստական դիրքերը, ապա առայժմ մենք մնում ենք միակ սոցիալիստական պետությունը և ապրում ենք սոցիալիզմին անհաշտորեն թշնամի իմպերիալիստական պետությունների օղակում: Հասկանալի յե, ընդունելով Սահմանադրությունը, մենք բնավ չենք մոռանում արտաքին վըտանգը, վորն այժմ գլխավոր վտանգն ե հանդիսանում մեր յերկրի աշխատավորների համար: Բայց և այնպես մեր մեջ աճում ե լիակատար վստահություն, վոր մեր պետական իրավակարգի հետագա դեմոկրատացումն ել ավելի կամրապնդի ԽՍՀՄ-ի սոցիալիստական հասարակակար-

դը՝ հակառակ նրա բոլոր թշնամիների (ծափահարություններ)։

Կարելի՞ է արդյոք յերևակայել դրան վորևե չափով նման մի պատկեր, վորևե թեկուզ ամենաուժեղ բուրժուական պետության նկատմամբ՝ սոցիալիստական պետությունների շրջապատում։ Ինքներդ դատեցեք՝ հազիվ թե...

Սոցիալիստական դեմոկրատիզմի ուժը հենց նրանում է, վոր առաջ գալով վորպես արդյունք պրոլետարական դիկտատուրայի հաղթության, նա աճում ու ընդարձակվում է որեցոր, առանձնապես մասսաների կուլտուրականության աճման հետ միասին։ Դրանում իր արտահայտությունն է գտնում մեր ուժերի վիթխարի աճումը։ Մեր յերկրում սոցիալիզմի լիակատար հաղթությունից հետո, խորհրդային հասարակարգի դեմոկրատիզմը զարգանում է ավելի մեծ ուժով և ավելի մեծ թափ ու ծավալով, իր հերթին լծակ հանդիսանալով սոցիալիզմի ուժերի վերելքի հետագա արագացման համար։

Մեր յերկրում դեմոկրատիզմի զարգացումը ցույց է տալիս սոցիալիստական դեմոկրատիայի բոլոր առավելությունները՝



բուրժուական պետությունների դեմոկրատիայի նկատմամբ։

Բայց այստեղ պետք է վորոշ շեղում կատարել արդեն բոլորովին յուրատեսակ «դեմոկրատիզմի» նկատմամբ՝ ըստ գերմանական ֆաշիզմի մեթոդի։

Տիրապետող կապիտալիստական ոլիգարխիայի ձեռքերը ձերբազատելու համար գերմանական ֆաշիստները մասսաներին և հենց նացիոնալ—սոցիալիստական կուսակցության բոլոր անդամներին հետևողականորեն այսպիսի հայացք են պատվաստում՝ «իմ առաջնորդները գիտեն, թե ինչ են ուզում նրանք։ Իսկ յեթե նրանք այդ չիմանային, ապա ինչպես կարող եյի իմանալ յես և լուծել այդ»։ Պարզ ասած՝ դա մի «դեմոկրատիզմ» է, հետևյալ սկզբունքով՝ «չհամարձակվես դատողություն անել, հենց քեզ համար ավելի վատ կլինի»։

Այդ պատճառով Նյուրենբերգյան այդ բոլոր համագումարներն ա՛յնքան հեռու յեն իսկական համագումարների նմանվելուց։ Դրանք համագումարներ չեն, այլ ինչվոր ուրիշ բան։

Այդ համագումարներում հավաքվում են միմիայն «ֆյուրերների» 2—3 ճառ լսելու

համար: Այդ «համագումարներում» վոչ մի քննարկում, վոչ մի վիճաբանություն չի լինում: Այնտեղ վոչ մի վորոշում և բանաձև չի քվեարկվում: Մասսաներին թույլ է տրված միայն մի բան՝ խփշտել այդ տեսակ համագումարների հետևանքները...՝

Խորհրդային դեմոկրատիզմի համեմատումը բուրժուական յերկրների դեմոկրատիզմի հետ՝ նույնիսկ վերջինիս լավագույն ձևերի, վկայում է առաջինի արմատական տարբերությունը և սկզբունքային առավելությունները՝ համեմատած յերկրորդի հետ: Պարզ է մի բան՝ միմիայն սոցիալիստական դեմոկրատիզմն է հանդիսանում աշխատավորների դեմոկրատիզմը, շահագործողների տիրապետությունից ազատագրված իսկական ժողովրդական մասսաների դեմոկրատիզմը:

Ով ուզում է համոզվել մեր հասարակակարգի դեմոկրատիզմի մեջ, նա չպետք է մոռանա գլխավորը: Իսկ խորհրդային հասարակակարգում գլխավորը, ինչպես հայտնի յե, այն է, ինչ վոր բացատրված է Սահմանադրության 6-րդ հոդվածում:

Ահա այդ «հոդված 6-րդը»:

«Հողը, նրա ընդերքը, ջրերը, անտառ-



ները, գործարանները, ֆաբրիկաները, հանքահորերը, հանքերը, յերկաթուղային, ջրային և օդային տրանսպորտը, բանկերը, կապի միջոցները, պետության կազմակերպած խոշոր գյուղատնտեսական ձեռնարկությունները (խորհտնտեսությունները, մեքենատրակտորային կայանները և այլն), ինչպես և հիմնական բնակարանային ֆոնդը քաղաքներում ու արդյունաբերական կենտրոններում, հանդիսանում են պետական սեփականություն, այսինքն համաժողովրդական ունեցվածք» (ծափահարություններ):

Այժմ այդ բոլորը պատկանում է ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻՆ:

Եվ ուրիշ ինչպիսի՞ ավելի հետևողական դեմոկրատիա յե պետք:

Թող ամեն մի պետության մեջ իրականացնեն նման միջոցներ: Եվ այն ժամանակ մենք այդպիսի պետության դեմոկրատիզմը կճանաչենք նույնպիսի իսկական համաժողովրդական դեմոկրատիզմ, ինչպիսին հանդիսանում է դեմոկրատիզմը ԽՍՀՄ-ում (ծափահարություններ):

Նոր Սահմանադրությունն այժմ ԽՍՀՄ-ի ԲՈԼՈՐ քաղաքացիներին տալիս է ՀԱՎԱՍԱՐ իրավունքներ: Կարելի յե նույնիսկ

ատել, որ նախկին սեփականատերերը վերադարձել են, թեպետ և հատուկ ձևով, սեփականության վերականգնման: Բայց այժմ աշխատավորների խորհուրդների միջոցով մասնակցելով այդ գործին, նրանք անչափ ավելի հարուստ են դարձել, որովհետև մասնակցում են ոչ թե մասնավոր, այլ համաժողովրդական սեփականության կառավարմանը (ծափահարություններ):

Մեր յերկրի աշխատավորներն այդ հարցում ունեն, իհարկե, իրենց հատուկ խոր մտածողությունը՝ «նախկին» մարդիկ իրավունքներ են ստանում, այդ վատ չէ, միայն թե նրանք ազնվորեն աշխատեյին:

Մեր հասարակակարգի դեմոկրատիզմն ընկեր Ստալինն իր զեկուցման մեջ շեշտեց մի նշանավոր փաստով ևս՝

«Խորհրդային իշխանությունը վերացրեց կալվածատերերի դասակարգը և նախկին կալվածատիրական, պետական ու վանքապատկան ավելի քան 150 միլիոն հեկտար հող հանձնեց գյուղացիներին, և այս—բացի այն հողերից, որ առաջներում էլ գյուղացիների ձեռքում եյին գտնվում»:

Մենք կուզենայինք տեսնել, թե ինչպես



որևէ բուրժուական պետության մեջ առանց փրկագնի գյուղացիներին կհանձնեյին թեկուզ ոչ թե 150, այլ միայն 15 միլիոն հեկտար (ծափահարություններ) կալվածատիրական և այլ հողեր: Այն ժամանակ մենք պատրաստ կլինեյինք ընդունելու, որ այդպիսի պետությունն սկսում է լրջորեն մոտենալ իսկական դեմոկրատիզմին (ծափահարություններ), աշխատավորների դեմոկրատիզմին:

Այնինչ, ինչ որ չի լսվում, որ կալվածատերերը, ազնվականները և վանահայրերն իրենց դասակարգային տեսակետից «դեմոկրատիկ» գործ համարեյին գյուղացիներին հող հանձնելը: Չի կարելի չհամաձայնել, որ նրանց խորթ է հեղափոխական դեմոկրատիզմը:

Մեր յերկրում իշխանության գլուխն եյին կանգնած նաև պարոնայք սոցիալիստները՝ եսերներից ու մենշևիկներից, 1917 թվականին: Բոլորն էլ գիտեն, որ նրանք իշխանությունն օգտագործեցին ոչ թե հողը գյուղացիներին հանձնելու, այլ այդ գործը հետաձգելու համար:

Նրանք այստեղ ևս կալվածատերերի և բուրժուազիայի ուղղակի դաշնակիցները

հանդիսացան: Բայց ինչպե՞ս էին պարծենում նրանք «դեմոկրատիայի» հանդեպ իրենց ունեցած նվիրվածությամբ: Նշանակում է, մեր ժամանակներում մենշևիկյան-էսէրական «դեմոկրատիան» ձեռնտու չէ կապիտալիստներին, կալվածատերերին, կուլակներին, սպեկուլյանտներին ու տերտերներին (ծափահարություններ): Նշանակում է մենշևիկներեն, էսէրերեն հասկացված «դեմոկրատիան» այժմ վոչ մի առնչություն չունի ժողովրդին այնքան հարկավոր իսկական դեմոկրատիայի հետ:

Խորհրդային դեմոկրատիզմի մի որինակ ևս:

Ինձնից առաջ հանդես եկավ հայտնի գրող Ա. Ն. Տոլստոյը: Ո՞վ չգիտե, վոր դա նախկին կոմս Տոլստոյն է: Իսկ ա՞յժմ: Խորհրդային յերկրի ամենալավ և ամենաժողովրդական գրողներից մեկը՝ ընկեր Ալեքսեյ Նիկոլայեվիչ Տոլստոյն է (ծափահարություններ):

Այստեղ մեղավորը պատմությունն է: Բայց փոփոխությունը դեպի լավ կողմն է կատարվել: Դրան համաձայն ենք մենք բոլորս, իր՝ Ա. Ն. Տոլստոյի հետ միասին:

Նոր Սահմանադրությունն էլ ավելի



կամրացնի մեր խորապես դեմոկրատիկ հասարակակարգը: Իսկ նրանով, վոր Սահմանադրության մեջ ԽՍՀՄ-ի քաղաքացիների վորոշակի պարտականությունները պարզորոշ կերպով մատնանշվելու հետ միաժամանակ հաստատապես ապահովվում են այնպիսի իրավունքներ, ինչպիսիք են աշխատելու իրավունքը, հանգստանալու իրավունքը, ծերության նյութական ապահովման իրավունքը, կրթության իրավունքը, կանանց լիակատար հավասարությունը տղամարդկանց հետ, ազգերի և ռասաների լիակատար հավասարությունը ԽՍՀՄ-ում և այլն— մենք բարձրաձայն հայտարարում ենք, թե ինչպես պետք է հասկանալ սոցիալիստական դեմոկրատիզմը:

Բուրժուական պետության մեջ դեմոկրատիայի նույնիսկ ամենակատարյալ ձևերը գործնականում չափազանց սահմանափակված և ծայրահեղ չափով սեղմված են ժողովրդի վրա բուրժուական փոքրամասնության ունեցած փաստական տիրապետության շրջանակներով: Կապիտալիստական ռեժիմի պայմաններում վոչ մի դեմոկրատիզմ չի դուրս գալիս և չի կարող դուրս գալ բուրժուական դասակարգերի արտոն-

յալ փոքրամասնության տիրապետության շրջանակներից, ժողովրդի իրավունքներն ու ազատությունները դնելով պրոկրուստյան կոշտ անկողնում:

Բուրժուազիան, իր իդեոլոգների և իր մամուլի միջոցով հասավ այն բանին, որ կապիտալիստական խղճուկ դեմոկրատիան, բուրժուական ազատությունների դեմոկրատիան, սովորաբար փառաբանվում է որպես դեմոկրատիզմ ընդհանրապես, որպես դեմոկրատիայի «վերդասակարգային» ձև, կամ նույնիսկ որպես դեմոկրատիզմի «համամարդկային» ձև: Բուրժուազիայի և սոցիալ-դեմոկրատիայի քաղաքագետների ու «թեորետիկների» ձեռքի ճարպկությունն այդ տեսակետից հասել է լարախաղացի արվեստին:

Բայց իրոք ոչ մի բուրժուական պետություն աշխատավորներին չի տվել և չի տալիս նույնիսկ փոքր մասն այն իրական դեմոկրատիկ իրավունքների ու ազատությունների, որոնք վայելում են ԽՍՀՄ-ի աշխատավորները և, որոնք ավելի մեծ չափով վայելելու յեն այսուհետև Նոր Սահմանադրությամբ (բուռն ծափահարություններ):



Բուրժուական դեմոկրատիզմը «համաժողովրդական դեմոկրատիզմի» անունով փառաբանում է լավագույն դեպքում աշխատավորների վերին աստիճանի պոչատ իրավունքները բուրժուական հասարակակարգում, որտեղ մամուլը, տպարանը, թուղթը, շենքերը, ամբողջ կապիտալը և ամբողջ իշխանությունը, հետևաբար փաստորեն նաև բոլոր իրավունքները գտնվում են տիրապետող դասակարգերի ձեռքում, իսկ աշխատավորներին մնում են միայն փշրանքներ աղայի սեղանից:

Յեվ, այնուամենայնիվ, բանվորները և մյուս աշխատավոր խավերը սովորել են նույնիսկ պոչատ բուրժուական ազատությունները, նույնիսկ սահմանափակ դեմոկրատիկ իրավունքներն օգտագործել հոգուտ իրենց շահերի՝ մասսաների քաղաքական լուսավորության համար, ուժերն առաջիկա մարտերին հարկավոր չափով պատրաստելու համար: Ուստի հասկանալի յե, որ կապիտալիզմի յերկրներում բանվորները և բոլոր դեմոկրատիկ տարրերն այդպիսի համառ պայքար են մղում նույնիսկ փոքր բուրժուական-դեմոկրատական

ազատություններն ու իրավունքները պաշտպանելու և ընդարձակելու համար:

Բայց մյուս կողմից, այդ իսկ պատճառով, տիրապետող բուրժուական դասակարգերը, այնտեղ, վորտեղ նրանք արդեն կորցրել են մասսաների վրա ազդեցություն գործելու հնարավորության հավատը, անցնում են բացահայտ բուրժուական-տեռորիստական դիկտատուրայի ֆաշիստական մեթոդներին: Իհարկե, կարելի չէ ասել, վոր այդպիսի միջոցներով, ինչպիսիք են տեռորը և անթիվ բռնությունները մասսաների վրա, յերկար չես դիմանա: Սակայն ֆաշիստական բուրժուազիան յերևի այսպես է դատում՝ թեկուզ մի որ, բայց իմը լինի:

Կարելի՞ չէ միթե զարմանալ, վոր վոչ միայն բանվորներն ու գյուղացիները, այլև բոլոր ազնիվ դեմոկրատիկ տարրերը՝ մանր, իսկ յերբեմն նաև միջակ բուրժուազիայից, գնալով ավելի բացե ի բաց հրաժարվում են ֆաշիզմին և ֆաշիստորեն գործող խմբակներին օժանդակություն ցույց տալուց:

Թե վորքան արագ են նեխվում ֆաշիստական հիմունքները, այդ յերևվում է ար-



դեն շատ փաստերից: Այժմ ֆաշիստները վոչ միայն վորևէ դեմոկրատիկ մնացորդ չեն հանդուրժում իրենց յերկրներում, վորտեղ առանց այն էլ «լռում են, վորովհետև բարոր կյանք են վարում»: Բնորոշ է, վոր ֆաշիստներն իրենց համար վտանգ են տեսնում դեմոկրատիզմի գոյության փաստում իսկ, նույնիսկ յերբ խոսքը վերաբերում է մյուս յերկրների դեմոկրատիզմին:

Ուստի, առանց հաշվի առնելու պետական սահմանները և խախտելով միջազգային բոլոր իրավունքներն ու սովորույթները, բոլորին հայտնի պետությունների ֆաշիստները, սուրը ձեռքին, ոդում, գերմանական «հայնկել»-ներով և իտալական «սավոյա»-ներով խառնվում են մյուս պետության ներքին գործերին, վորտեղ ժողովուրդը չի ուզում հանդուրժել նրանց նրման պարոններին: Զուր չէ, վոր մի քանի բարի մարդիկ, տեսնելով այդ բոլորը, վշտանում են ֆաշիստների համար, թե՝ խեղճե՛ր, արդյոք չի՞ այրվում նրանց վոտքի տակի հողը, վայ թե նրանք կոտրեն իրենց վիզը...

Մեր վերաբերմունքը դեմոկրատիզմի,

որպես աշխատավորների համար ամենաարժեքավոր բարիքներից մեկի հանդեպ, հայտնի չէ։ Մեր սրտին մոտ են դեմոկրատիայի հաջողությունները ամեն մի երկրում։ Մենք ուրախանում ենք դեմոկրատական իրավունքների նվաճումների առթիվ, որտեղ էլ առաջ ընթանան ժողովրդական մասսաները այդ ճանապարհով։

Մենք չենք կարող ընդհանուր լեզու ունենալ ֆաշիզմի հետ, որի վտանգը մենք մտադիր չենք ոչ նվազեցնել, ոչ էլ չափազանցնել։ Սակայն, մենք մեր ամբողջ հոգով, այն էլ գործնականորեն, նրանց հետ ենք, ովքեր պայքար են մղում ֆաշիստ ռեակցիոներների դեմ։ Մենք ամբողջովին նրանց հետ ենք, ում համար թանկ են «ամբողջ առաջավոր ու պրոգրեսիվ մարդկության» (Ստալին) շահերը։

Նոր Սահմանադրության ընդունումն է՛լ ավելի բարձրացնում է ԽՍՀՄ-ն իբրև դեմոկրատիզմի հենարան ու փարոս։

Նոր Սահմանադրության ընդունումը՝ նրա բազմակողմանի պետական դեմոկրատացման հետ, որն ընդարձակում է հետագա ավելի լուրջ հաջողությունների հնարավորությունը՝ ԽՍՀՄ-ի ժողովուրդների



ամբողջ կյանքի բարելավման ասպարեզում, անդնահատելի օգնություն ցույց կտա միջազգային սոցիալիզմին և կանդրադառնա այն պայքարի վրա, որը մղում են բանվորները, գյուղացիներն ու բոլոր ճնշվածները հանուն իրենց իրավունքների, հանուն լիակատար կերպով ազատագրվելու ֆաշիզմից և կապիտալիզմից, որը ծնում ու սնում է ֆաշիստական ռեժիմները։

Որքան ավելի խոր կերպով մտնի ստալինյան Սահմանադրությունը մեր կյանքի մեջ, այնքան բազմակողմանի կլինի նրա ազդեցությունը, որպես սոցիալիզմի և հետևողական դեմոկրատիզմի սահմանադրություն ոչ միայն մեզ մոտ, այլև ԽՍՀՄ-ի սահմաններից շատ հեռու։ Այնքան ավելի կտարածվի նրա հեղափոխական ներգործությունն աշխատավոր մասսաների վրա, որոնք պայքար են մղում հանուն իրենց ազատագրման՝ ֆաշիզմից, իմպերիալիզմից ու գաղութային ճնշումից։

## III. ԽՍՀՄ-Ն ՅԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՎ

Նոր Սահմանադրությունն արտահայտում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետագա զարգացումը ՍՍՀՄ-ի ժողովուրդների հարաբերությունների մեջ։

Այն ամենը, ինչ խոսվեց այս համագումարում, հաստատում է, որ այս Սահմանադրությամբ մենք նոր քայլ ենք կատարում Խորհրդային Միության ժողովուրդների մեծ բարեկամությունն ամրապնդելու գործում։ Մենք այստեղ ևս առաջ ենք մղում Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության սկսած գործը։

Ազգային հարցի լուծումը Խորհրդային Միության մեջ՝ մեր ժամանակվա ամենաուսանելի փաստերից մեկն է հանդիսանում։ Դրանում արտահայտվում է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության սկզբունքների ուժը և խորհրդային իշխանության հավատարմությունը հետևողական դեմոկրատիզմի նկատմամբ։

Մենք ազգային հարցի ճիշտ լուծումը գտանք տնտեսական կացութաձևով և կենցաղով, պատմական անցյալով և ազգային



կուլտուրայով, միմյանցից այնչափ տարբեր ժողովուրդների բարեկամությունն ամրապնդելու հիման վրա։ Մենք հասանք այդ բանին, չնայած որ ցարական հին Ռուսաստանի կողմից ճնշվող բազմաթիվ ազգությունների մեջ չէր կարող չպահպանվել մեծ անվստահություն դեպի ռուսները, որպես անցյալում ճնշող ազգի ներկայացուցիչներ։

Ոչ մի բուրժուական երկիր, թեկուզ և նա գոյություն ունենար արդեն հարյուրամյակների ընթացքում, չկարողացավ իր մոտ գտնել ազգային հարցի ճիշտ լուծում, ինչպես այդ մասին խոսք լինել չէր կարող նաև հին բուրժուա-կալվածատիրական Ռուսաստանում։ Այդ մեր երկրում հնարավոր եղավ շնորհիվ սոցիալիզմի հաղթության, որն ապահովեց հետևողական դեմոկրատիզմի կիրառման հնարավորությունը, շնորհիվ ազգությունների իսկական իրավահավասարության և առավել թույլ ու անցյալում առանձնապես ճնշված ազգային փոքրամասնությունների նկատմամբ պետության ունեցած հատուկ հոգատարության։

Մեզ մոտ կազմավորված և ամրապնդ-

վող՝ ժողովուրդների բարեկամության նըման վորևէ բան չի կարելի պատկերացնել բուրժուական ռեժիմի պայմաններում, վորտեղ բոլոր դեպքերում իշխում են տիրապետող ազգի տիրապետող դասակարգերը: Ըստ վորում, յերբեմն զանազան ազգերի տիրող դասակարգերի վերնախավերը համաձայնության են գալիս միմյանց հետ և քիչ թե շատ ընդհանուր լեզու յեն գըտնում, ճնշողների լեզու՝ համապատասխան ազգությունների ժողովրդական մասսաների նկատմամբ: Բայց այդ դեպքում ևս ճնշված ազգության աշխատավորները, առանձնապես գաղութներում ու կիսագաղութներում, մնում են կրկնակի ճնշման տակ՝ «իրենց» կեղեքիչների ճնշման տակ, և բացի այդ՝ տիրապետող ազգի հատուկ ճնշման տակ:

Խորհրդային Միության մեջ տեղի յեն ունենում բազմաթիվ ազգությունների վերածնություն, տեղի յե ունենում բոլոր ժողովուրդների տնտեսական ուժերի ու ազգային կուլտուրաների վերելք: Դրա հետ միասին, ամրապնդվում է նաև Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների բազմազգ Միությունը, վորպես միասնական ամբողջություն:



Խորհրդային իշխանությունը գոյություն չեր ունենա յերկրի յերեսին, յեթե գործնականում մեծագույն հոգատարություն չցուցաբերեր յերկրի բոլոր ժողովուրդների կարիքների նկատմամբ, նրանց տնտեսական վերելքի նկատմամբ, աշխատավորների նյութական բարեկեցության վերելքի ու ազգային կուլտուրաների աճման նկատմամբ: Ըստ վորում, ԽՍՀՄ-ն վարում է կապիտալիզմի ժամանակ առավել հետամնաց ու առավել ճնշված ազգություններին ուժեղ ոժանդակություն ցույց տալու քաղաքականություն, դրանով իսկ արագացնելով նրանց բարձրացումն ընդհանուր մակարդակին:

«Միասնական-անբաժանելի» Ռուսաստանից առաջ յեկան ավելի քան 50 հանրապետություններ, ինքնավար մարզեր ու ազգային օկրուգներ: Առանց ԽՍՀՄ-ում ազգային-պետական միավորներ առանձնացնելու՝ խոսք անգամ լինել չեր կարող ազատ ազգային զարգացման մասին, էլ չենք խոսում անցյալում ճնշված ազգությունների մեջ՝ ասենք թեկուզ վեյիկոռուսների

նկատմամբ առաջ յեկած անվստահության վերացման մասին: Բազմաթիվ ազգային հանրապետություններ ու մարզեր ստեղծելով մեր պետությունը վոչ միայն չթուլացավ, այլ ե՛լ ավելի ամրապնդվեց (ծափահարություններ):

Նոր Սահմանադրությունը հետագա քայլ ե նշում ԽՍՀՄ-ի ժողովուրդների միջև բարեկամությունն ամրապնդելու ուղիով, մեր յերկրում սոցիալիստական ինտերնացիոնալիզմի զարգացման ուղիով: Այդ կարելի յե ընդգծել մի շարք կարևոր որինակներով:

Սահմանադրությունը 7-ից մինչև 11-ի յե հասցնում միութենական հանրապետությունների թիվը, այսինքն այնպիսի հանրապետությունների, վորոնք իրավունք ունեն ազատ կերպով դուրս գալու ԽՍՀՄ-ից: Դրանով կրկին անգամ ընդգծվում ե վոչ միայն ազգային զարգացման ազատությունը մեր յերկրում, այլև մեր Միությունը ստեղծած ազգությունների միավորման կամավորությունը:

Նոր Սահմանադրության մեջ ե՛լ ավելի խստորեն են սահմանադծվում ֆունկցիաները Միության և նրա կազմի մեջ մտնող



միութենական հանրապետությունների միջև: Ըստ վորում, ԽՍՀՄ-ի առանձին նոր ժողկոմատներ ստեղծելուն զուգընթաց, ամբողջ շարք նոր արդյունաբերական ժողկոմատներ են ստեղծվում միութենական հանրապետություններում, շատ ձեռնարկություններ համամիութենական կառավարումից հանձնելով հանրապետությունների իրավասությանը:

Դուք այստեղ լսեցիք ընկեր Ստալինի առաջարկը՝ Գերագույն Խորհրդի յերկու պալատների անդամների թիվը հավասարեցնելու և վոչ միայն Միության Խորհրդի պատգամավորների, այլև Ազգությունների Խորհրդի պատգամավորների համար ուղղակի ընտրություններ սահմանելու մասին: Այդ առաջարկի կիրառումը կապահովի բոլոր և առանձնապես ավելի պակաս չափով ուժեղ հանրապետությունների ներկայացուցչության հետագա ավելացումը Գերագույն Խորհրդի մեջ և կբարձրացնի Ազգությունների Խորհրդի հեղինակությունը: Չի կարելի չխոստովանել, վոր այդ առաջարկը համապատասխանում ե ԽՍՀՄ-ի ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման գործին և լիովին համապա-

տասխանում է սոցիալիզմի շահերին (ծափահարություններ)։

Այսպես են հանդես գալիս մեր նոր Սահմանադրության մեջ հիմնական մոմենտները սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ձևերի զարգացման գործում։

Սկզբից հենց, խորհրդային իշխանությունն իր առջև խնդիր էր դրել ապահովելու ազգամիջյան խաղաղությունը մեր բազմազգ յերկրում։ Նա դրա մեջ տեսնում էր սոցիալիզմի հաղթությունն ապահովելու գլխավոր պայմաններից մեկը։

Պետական շինարարության ձևերի հարցը միշտ յենթարկելով սոցիալիզմի արմատական շահերին և պրոլետարական դիկտատուրայի ամրապնդման խնդիրներին, մեր կուսակցությունը յուրաքանչյուր էտապում գտնում էր լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների միջև բարեկամությունն ամրապնդելու քաղաքականության կիրառման իր յուրահատուկ ձևերը։ Մեր բազմազգ պետության մեջ հաջողվեց գործնականում ապահովել ազգային կուլտուրաների արագ վերելքը՝ նրանց ամբողջ բազմերանգ զանազանությամբ, և դրա հետ միասին գործնականում ապահո-



վել խաղաղությունն ու բարեկամությունը Միության բոլոր ժողովուրդների միջև։

Վո՛րքան հույսեր եյին կապում մեր թշնամիները ԽՍՀՄ-ում ազգամիջյան յերկպառակությունների հետ, վո՛րքան ազգային կուսակցություններ, վորոնք կերակրվում եյին վոչ միայն ազգային, այլև տարբերկրյա բուրժուազիայի կողմից, սնանկացան այդ գործում։

Մեր յերկրում, վորտեղ բոլոր ազգի աշխատավորներն ընդհանուր ջանքերով ցած գլորեցին «իրենց» և օտար շահագործողներին, վորտեղ գործնականում ապահովված է լիակատար իրավահավասարությունը բոլոր ժողովուրդների հարաբերությունների մեջ, վորտեղ չտեսնված արագությամբ առաջ է ընթանում ազգային կուլտուրաների վերածնությունը և վորտեղ բոլոր ժողովուրդների համար ապահովված է մասնակցությունը Միության ընդհանուր գործերի լուծման մեջ՝ հետևողական դեմոկրատիզմի հիման վրա,— այդպիսի յերկրում հող չկա ազգամիջյան բախումների համար։

Այնպիսի մի յերկիր, ինչպիսին է Խորհրդային Սոցիալիստական Հանրապետու-

թյունների Միությունը, կարող է և պետք է դառնա ժողովուրդների միջև էլ ավելի լայն, ինտերնացիոնալ մասշտաբով խաղաղության և բարեկամության հաստատելու նախապայմանը (ծափահարություններ):

Մեր դասակարգային թշնամիները, թըվում է, պետք է արդեն համոզվեն այն բանում, վոր իրենց բոլոր հաշիվները՝ մեր յերկրի հաշվին վաստակ ձեռք բերելու վերաբերմամբ, կառուցված են ավազի վրա: Յեվ այնուամենայնիվ նրանցից առավել անհամբերներն այժմ էլ Ասիայում ու Յեվրոպայում իրենց հափշտակիչ պլանների մեջ, ինչպես յերևում է, չեն ցանկանում հրաժարվել մեր ներքին գործերին դրսից միջամտելու իմաստով ամեն տեսակ նոր պլաններ հորինելուց:

Վերջին ժամանակներս ընդհանուր ուշադրություն գրավեցին իրենց վրա, իբր թե «կոմունիզմի դեմ» Բեռլինում կնքված գերման—ճապոնական համաձայնության վերաբերյալ հաղորդագրությունները: Բայց ամբողջ աշխարհում այնպես են հասկացել, վոր հրապարակված պայմանագիրը սոսկ մի վարագույր է հանդիսանում գերմանա-



կան ու ճապոնական իմպերիալիստների գաղտնի հափշտակողական և մասնավորապես հակախորհրդային պլանների քողարկման համար:

Նշանակում է, մենք չենք կարող անցնել այդ վոչ այն է՝ չափազանց կասկածելի պայմանագրերի, վոչ այն է՝ պարզապես դավադիրների կողքով:

Սկսենք գերմանական կողմից:

Ըստ յերևույթին գերմանական ֆաշիստները գտնում են, վոր իրենք արդեն բավականաչափ բարելավել են իրենց ներքին գործերը, վորպեսզի այժմ ընդհուպ զբաղվեն արտաքին կարգի ավանտյուրաներով, ընտրելով այդ գործի համար արժանավոր դաշնակիցներ: Շատերը հավանորեն հաճույքով կհամաձայնվեն, վոր գերմանական ֆաշիզմն արդեն բավականաչափ բախտավորեցրել է իր ժողովրդին:

Վոչ այլ տեղ, քան յեթե այդ ֆաշիստների իշխանության ներքո յե, ըստ յերևույթին, վոր արդեն բոլորը յերջանիկ են ու ապահովված, կուշտ են և ուրախ, հանգիստ են և վերին աստիճանի գոհ: Իսկ գերմանական քաղաքներում պարենային հերթերի մեծանալու մասին ֆաշիստները

հանդստացնող տոնով ամենուրեք հայտարարում են, թե՝ բնակչության համար հաց ու յուղ քիչ կա, բայց դրա փոխարեն ֆաշիստներն ավելի շատ թնդանոթներ ու արկեր ունեն, դրա փոխարեն Կրուպպի գործարանները գիշեր ցերեկ աշխատում են թնդանոթներ ու արկեր արտադրելու վրա:

Կուլտուրայի ու կուլտուրական մարդկանց ծանր դրությունը Գերմանիայում փութաջանորեն փոխարինվում ե չքեղ զորահանդեսներով ու ճառերի արդեն ձանձրացրած ճռճռոցով: Չնայած դրան, ներքին «հանգստացումը» գերմանական ֆաշիստները կարող եյին պատկերել իրենց համակենտրոնացման ճամբարների ու բանտերի տաժանակրային ռեժիմի կայունությամբ, համակենտրոնացման ճամբարների ու բանտերի, վոր լցվում են նորանոր առաջավոր բանվորներով ու ինտելիգենտներով, վորոնց համար պարզապես թանգ են կուլտուրայի շահերը:

Իսկ ամենից հասարակ կերպով ֆաշիզմը Գերմանիայում «լուծեց» ազգային հարցը, ջախջախելով հրեաներին, ըստ վորում առանց ընտրության— և՛ ծերերին, և՛ փոքրահասակներին, և՛ ֆաշիզմի հանդեպ թըշ-



նամական վերաբերմունք ունենալու մեջ մեղավոր հանդիսացողներին, և անմեղներին: Անտիսեմիտների վերաբերմամբ այժմ առիթ ե լինում հիշելու ընկեր Ստալինի այն վոչնչացնող խոսքը, վորով նա 1931 թվականի հունվարի 12-ին պատասխանեց Ամերիկայի հրեական հեռագրական գործակալության արած հարցումին:

Ընկեր Ստալինն այն ժամանակ իր պատասխանի մեջ գրել եր.

«Պատասխանում եմ Ձեր հարցումին: Ազգային ու ռասսայական շովինիզմն այն մարդատյաց բարքերի մնացորդն ե, վորոնք հատուկ եյին կաննիբալիզմի ժամանակաշրջանին: Անտիսեմիտիզմը, վորպես ռասսայական շովինիզմի ծայրագույն ձև, կաննիբալիզմի առավել վտանգավոր մնացորդն ե հանդիսանում: Անտիսեմիտիզմը ձեռնտու յե շահագործողներին՝ վորպես շանթարգել, վորը կապիտալիզմը դուրս ե բերում աշխատավորների հարվածի տակից: Անտիսեմիտիզմը վտանգավոր ե աշխատավորների համար՝ վորպես կեղծ կածան, վորը շեղում ե նրանց ճիշտ ուղուց և հասցնում ջունգլիները:

Այդ պատճառով, կոմունիստները վոր-

պես հետևողական ինտերնացիոնալիստներ, չեն կարող անտիսեմիտիզմի անհաշտ և վոխերիմ թշնամիները չլինել: ԽՍՀՄ-ում խստագույն կերպով հետապնդվում է անտիսեմիտիզմը, վորպես խորհրդային հասարակակարգին խորապես թշնամի յերեվույթ: ԽՍՀՄ օրենքներով ակտիվ անտիսեմիտիստները պատժվում են մահապատժով:

Ի. ՍՏԱԼԻՆ» (ծափահարություններ):

Գերմանական ֆաշիստներն իրավամբ արժանացան ժամանակակից կաննիբալների հերոստրատյան փառքին, կաննիբալներ, վոր թարգմանված ռուսաց լեզվով նշանակում է ժամանակակից մարդակերներ (ծիծաղ, ծափահարություններ):

Նրանց մեջ կան ավելի քան բավականաչափ մարդիկ, վորոնք սիրում են կլասիֆիկացիայի ենթարկել ժողովուրդներին ու ռասսաներին ըստ ամեն տեսակ կատեգորիաների: Բայց չէ՞ վոր մենք, խորհրդային մարդիկս ևս կարող ենք մեր կարծիքը հայտնել այդ մասին:

Մենք գերմանական մեծ ժողովրդի նկատմամբ վոչ մի այլ զգացմունք չունենք, բացի բարեկամության և անկեղծ հարգանքի



զգացմունքից (բուռն ծափահարություններ), սակայն ամենից լավ կլիներ պարոն ֆաշիստներին դասել այնպիսի ազգի՝ բարձր կարգի «ազգի» շարքը, վորը կոչվում է ժամանակակից կաննիբալ-մարդակերների «ազգ» (ծափահարություններ):

Իսկ մեր վերաբերմունքը դեպի հրեա ժողովուրդը բխում է մեր լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հիմքերից և շատ յերկրներում հրեաների ունեցած ճնշված դրությունից:

Ավելորդ է ծանրանալ այն հարցի վրա, վոր հրեա ազգի կապիտալիստներին և հակահեղափոխականներին մենք վերաբերվում ենք վորպես շահագործողների և մեր գործի թշնամիների (ծափահարություններ):

Սակայն ինչ էլ ասեն ժամանակակից կաննիբալները ֆաշիստ անտիսեմիտներից, մեր յեղբայրական զգացմունքները դեպի հրեա ժողովուրդը վորոշվում է այն բանով, վոր նա ծնել է մարդկության կոմունիստական ազատագրման գաղափարների հանճարեղ ստեղծողին և գերմանական կուլտուրայի ու մյուս ժողովուրդների կուլտուրաների բարձրագույն նվաճումները գիտականորեն

տիրապետողին՝ Կարլ Մարքսին (ծափահա-
բություններ), վոր հրեա ժողովուրդն ա-
մենազարգացած ազգերի հետ միասին տը-
վել է գիտության, տեխնիկայի ու արվես-
տի բազմաթիվ խոշորագույն ներկայացու-
ցիչներ, տվել է շատ պանծալի հերոսներ
ճնշողների դեմ աշխատավորների մղած
հեղափոխական պայքարում, և մեր յերկ-
րում հանդես է բերել ու հանդես է բերում
նորանոր հրաշալի, տաղանդավոր ղեկա-
վարներ ու կազմակերպիչներ՝ շինարարու-
թյան բոլոր ասպարեզներում և սոցիա-
լիզմի գործի պաշտպանության ասպարե-
զում (յերկարատև ծափահարություններ)։
Այս բոլորով վորոշվում է մեր վերաբեր-
մունքը դեպի անտիսեմիտները և անտի-
սեմիտական գազանությունները, վորտեղ
ել տեղի ունենան դրանք։

Մեզ համար պարզ է, վոր գերմանական
ֆաշիզմը, լուծելով իր ներքին հարցերն
անտիսեմիտական– կաննիբալական քաղա-
քականություն վարելու որինակով, իր սե-
փական ձեռքով վոչնչացնող դատավճիռ է
ստորագրում իր ամբողջ ներքին քաղաքա-
կանության համար։

Այնուամենայնիվ այդ պարոնները գը-



նում են, վոր իրենց ներքին գործերն ի-
րենք վատ չեն կատարում։ Ջե՞ վոր ռայ-
խստագի հրկիզումը նրանց ոգնեց իշխա-
նության գլուխ անցնելու և իրենց յերկ-
րում դեմոկրատիզմի մնացորդներին վերջ
տալու։

Մյուս կողմից՝ ի՞նչ անել այժմ, ի՞նչ
անել այսուհետև։ Իրոք դեռ ինչպիսի՜ «չը
լուծված» ներքին գործեր են մնացել գեր-
մանական ֆաշիզմի մոտ։ Հո չպի՞տի զբաղ-
վեն արդեն այրված ռայխստագի նոր հըր-
կիզումով (ծիծաղ, ծափահարություններ)։

Թե ինչ արժեն նրանց մի քանի դաշնա-
կիցներն արտաքին և մասնավորապես հա-
կախորհրդային ավանտյուրաներ պատրաս-
տելու գործում,— մենք նույնպես գիտենք։

Ինչպես յերևում է, Ճապոնիայում քիչ
չեն այնպիսի մարդիկ, վորոնք վորոշում
են իրենց ազատ համարել ներքին մեծ հոգ-
սերից, քանի վոր ուզում են ճապոնական
ուժերը դարձնել գերմանական ֆաշիզմի
դաշնակից՝ գազանությունների և ամեն տեսակ
հափշտակումների ավանտյուրիստական
պլաններն իրականացնելու ասպարեզում։

Յեվ իսկապես, կարծես քիչ ժամանակ չի
անցել 1936 թվականի փետրվար ամսի հայտ

նի դեպքերից հետո: Չէ՞ որ այն ժամանակ Տոկիոյում գաղաղած ֆաշիստորեն գործող սպաների մի փոքրիկ խմբակ, ընդամենը մի փոքր ժամանակով, այսպես ասած՝ «մի կողմ հրեց» կենտրոնական իշխանությունը պետության մայրաքաղաքում: Չէ՞ որ մի քանի օրով կորած մինիստրներն այսպես կամ այնպես արդեն գտնվեցին... (ծիծաղ, ծափահարություններ):

Վերջ ի վերջո մեր գործը չէ դատողություններ անել Ճապոնիայի ներքին կարգերի և ճապոնական իշխանությունների ներքին հոգսերի մասին:

Սակայն վերադառնալով գերման-ճապոնական համաձայնությանը, որն արտաքին աշխարհի համար ունի «կոմունիզմի» դեմ ուղղված համաձայնության կերպարանք, բայց իրոք նման է իմպերիալիստների սովորական դաշինքին, կնքված հափշտակողական նպատակներով, մենք պետք է ուղղակի ասենք, որ մեր աչքը չենք փակում այդ համաձայնության իրական բնույթի հանդեպ: Մեզ համար հասկանալի յե խաղաղության գործի համար յեղած այն անհանգստությունը, որն առաջ է բերել



այդ «համաձայնությունը» բոլոր յերկրներում:

Չէ՞ որ պատահականություն չէ այն փաստը, որ այստեղ խոսքը վերաբերում է յերկու պետությունների, որոնք նախապես, մեկը մյուսի հետևից, դուրս յեկան Ազգերի Լիգայից: Յեվ, ինչպես արդեն այն ժամանակ հասկանալի յեր բոլորին, դուրս յեկան նրա համար, որ կատարելապես ձերբազատեն իրենց ձեռքը՝ ռազմական- հափշտակողական ավանտյուրաների համար:

Յեթե այժմ խոսքն իրոք վերաբերեր «կոմունիստական վտանգի» դեմ բուրժուական պետությունների մղած սովորական պայքարին, ապա Գերմանիայի և Ճապոնիայի համար կարիք չկար առաջուց դուրս գալ Ազգերի Լիգայից: Բոլորին հասկանալի յե, որ Ազգերի Լիգան խոչընդոտ չի հանդիսանում այդ տեսակետից:

Պատահականորեն չեն լինում նաև այսպիսի փաստեր: Բոլորն էլ գիտեն, թե այն հայտնի պակտը, որը նպատակ ունի ապահովել խաղաղությունն Արևելյան Յեվրոպայում, ֆաշիստական Գերմանիան չվըճռեց ստորագրել և աշխատում է վիժեցնել

այն: Չի կարելի մոռանալ նաև այն, վոր ճապոնական կառավարությունն ահա արդեն մի քանի տարի յե, վոր խուսափում ե չհարձակվելու պակտ կնքելու մեր առաջարկից:

Այդ պատճառով էլ շատերն այնքան շուտ ըմբռնեցին վերջին գերման-ճապոնական համաձայնության իսկական իմաստը, մի համաձայնության, վորի հեղինակները պատրաստակամություն ցուցաբերեցին ըղբաղվելու վոչ միայն իրենց գործերով, այլ մյուս երկրների գործերով:

Հետաքրքիր ե, վոր ամբողջ աշխարհում վոչ վոք չի հավատում այդ համաձայնության հեղինակների խոսքերին և այն բանին, ինչ վոր գրել են նրանք հրապարակելու համար:

Նույնիսկ բուրժուական մամուլն ամենուրեք գրում ե, վոր այստեղ խոսքը «կոմունիզմի» դեմ պայքարելուն չի վերաբերում, այլ՝ Չինաստանի և Եվրոպայի, ներառյալ նաև ԽՍՀՄ-ի նկատմամբ յեղած գիշատիչ պլաններին: Հետևաբար «կոմունիզմի դեմ պայքարելու» պատրվակով, իմպերիալիստների դավադրություն ե կազմվում խաղաղության դեմ, կազմվում ե պատերազմի հրձիգների դավադրություն:



Վորոշ մասով՝ խաղաղության գործի դեմ ուղղված դավադրությունն էլ կարելի յե անվանել «պայքար կոմունիզմի դեմ»: Բայց այն ժամանակ պետք ե հետևողական լինել և ասել այն, ինչ վոր գոյություն ունի իրականության մեջ. ներկա պայմաններում ֆաշիզմն իր դաշնակիցներով պատերազմի ծրագիր ե, իսկ կոմունիզմը և ԽՍՀՄ-ն՝ խաղաղության ծրագիր են (ծափահարություններ):

Մենք շատ փաստերից գիտենք, վոր խաղաղությունը վտանգելու և պատերազմ բռնկեցնելու սիրողներ քիչ չեն այժմ: Մենք շարունակ համապատասխան հիշեցումներ ենք ստանում մեր սահմաններից: Հարևան պետությունների մի քանի զինվորականներ, չզլանալով քիչ թե շատ իրենց լուրջ պահել, իրենց պահում են բռնացի վորպես աշնան աներես ճանճեր (ծիծաղ, ծափահարություններ):

Մի քանիսի մոտ այդ տեղիք ե տալիս նաև այսպիսի դատողությունների, թե՝ գուցե ֆաշիստները և նրանց դաշնակիցները չեն կարող այլևս հույս դնել իրենց ներքին դրության ամրության վրա, այդ պատճառով էլ շտապում են պատերազմի: Ի-

հարկե այդ նրանք ավելի լավ են տեսնում: Հո մենք չե՞նք, վոր պետք է խղճանք ֆաշիստներին և իմպերիալիստական մյուս ավանտյուրիստներին:

Մեր խնդիրն է՝ խաղաղության պահպան կանգնել և պատրաստ լինել դրսից յեկող ամեն մի դավադրության ու վոտնձգության (ծափահարություններ):

Մենք ամբողջովին զբաղված ենք մեր ներքին գործերով: Մենք անշեղորեն վարում ենք մյուս պետությունների ներքին գործերին չմիջամտելու քաղաքականություն: Մենք պարծենում ենք այն բանով, վոր մեր յերկրում հաստատված է ազգամիջյան խաղաղություն և ժողովուրդների բարեկամություն և կուզեյինք միայն այն, վոր բոլոր ժողովուրդների հարաբերություններում ապահովված լիներ հաստատուն խաղաղություն (ծափահարություններ):

Յեթե պարոնայք ֆաշիստները և կիսաֆաշիստները դուրս են գալիս Ազգերի Լիգայից, վորովհետև նա չի խրախուսում ռազմական ավանտյուրաները, ապա մենք, ընդհակառակը, կողմնակից ենք, վոր Ազգերի Լիգան ավելի հաջողությամբ, քան մինչև այժմ, պաշտպանի ժողովուրդների



խաղաղության գործը և ավելի ակտիվորեն հականերգործի պատերազմի բոլոր ու ամեն տեսակ հրձիգներին:

Բայց յեթե անկեղծ խոսելու լինենք, ապա խաղաղության շահերի և ԽՍՀՄ-ի ժողովուրդների խաղաղ աշխատանքի պաշտպանության գործում մենք իսկապես հավատում ենք միմիայն մեր սեփական ուժերին (ծափահարություններ):

Յեվ մենք գիտենք, վոր այդ ուժերն աճում են այնքան ավելի արագ, վորքան ավելի յեն ամրանում ԽՍՀՄ-ի ժողովուրդների մեծ բարեկամությունը, վորքան ավելի միահամուռ կերպով և գիտակցաբար աշխատենք մենք բոլորս ԽՍՀՄ-ի մեր նոր, ստալինյան Սահմանադրության հիման վրա (ծափահարություններ):

## IV. ԱՌԱՋ՝ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ

Մեր Սահմանադրությունն որենսդրական ձևակերպում կտա սոցիալիստական հասարակությանը: Նա մեր համարյա քսանամյա նվաճումների արդյունքն է: Նա միևնույն ժամանակ մեր ամբողջ գործի հզոր առաջշարժիչն է:

Մենք իրականացրինք կոմունիզմի միայն
առաջին, ստորին փուլը։ Կոմունիզմի
նույնիսկ այդ առաջին փուլը՝ սոցիալիզ-
մը, դեռ հեռու յե ավարտված լինելուց,
կառուցված ե միայն հիմնականը։
Մեր յերկրում վերացվեցին պարազի-
տային դասակարգերը, այսինքն՝ բոլոր և
ամեն տեսակ կապիտալիստներն ու կա-
պիտալիստիկները։ Դրա շնորհիվ վոչըն-
չացված ե մարդու շահագործումը մար-
դու կողմից։ Դա մի հսկայական քայլ ե
դեպի առաջ, վոչ միայն մեր յերկրի ժո-
ղովուրդների կյանքում, այլև ամբողջ
մարդկության պատմության ճանապար-
հին։
Սակայն մենք լրիվ չենք լուծել դասա-
կարգերի վերացման խնդիրները, թեպետ
իշխանության գլուխը կանգնած ԽՍՀՄ-ի
բանվոր դասակարգն արդեն պրոլետա-
րիատ չե բառիս բուն իմաստով, իսկ իր
մասսայով կոլտնտեսությունները մտած
գյուղացիությունն արդեն բնավ հին գյու-
ղացիությունը չե։
ԽՍՀՄ-ում գոյություն ունեցող յերկու
դասակարգերից թե՛ մեկը և թե՛ մյուսը
սոցիալիզմ են կառուցում, մտնում են



սոցիալիստական տնտեսության սիստեմի
մեջ։ Սակայն գտնվելով սոցիալիստական
տնտեսության մի ընդհանուր սիստեմում,
բանվոր դասակարգն իր աշխատանքով
կապված ե պետական սոցիալիստական
սեփականության հետ (համաժողովրդա-
կան ունեցվածքի հետ), իսկ կոլտնտեսա-
յին գյուղացիությունը՝ կոոպերատիվ-
կոլտնտեսային սեփականության հետ, վո-
րը պատկանում ե առանձին կոլտնտեսու-
թյուններին և կոլտնտեսային-կոոպերա-
տիվ միավորումներին։ Սոցիալիստական
սեփականության տարբեր ձևերի հետ
գոյություն ունեցող այդ կապով ե վո-
րոշվում նախ և առաջ այդ դասակարգերի
դրության տարբերությունը։ Դրանով էլ
վորոշվում ե նրանց հետագա զարգացման
ուղիների վորոշ տարբերությունը։
Նրանց զարգացման մեջ ընդհանուրն
այն ե, վոր այդ յերկու դասակարգերն
էլ զարգանում են դեպի կոմունիզմը (ծա-
փահարություններ)։ Այդ կապակցու-
թյամբ աստիճանաբար ջնջվելու յեն տար-
բերությունները նրանց դասակարգային
դրության միջև, մինչև վոր այստեղ ևս
վերջնականապես անհետանան դասակար-

գային տարբերությունների մնացորդնե-
րը:

Չի կարելի չտեսնել, որ դա տեսական ճանապարհ է: Չի կարելի նաև չտեսնել, որ այդ խնդիրների լուծումը կախված կլինի այն բանից, թե մեզ մոտ որքան հաջողությամբ կիրականացվի,— ինչպես արտահայտվեց ընկեր Ստալինը,— «հասարակության պետական ղեկավարումը (դիկտատուրան)», որ «պատկանում է բանվոր դասակարգին, որպես հասարակության առաջավոր դասակարգի»:

Այդ կապակցությամբ պետք է խոսել նոր Սահմանադրության այն կետի վերաբերյալ, որտեղ խոսվում է ԽՍՀՄ-ում Կոմունիստական կուսակցության ունեցած ղեկավար դերի մասին: Սահմանադրությունն այստեղ էլ ասում է միայն այն, ինչ որ մեզ մոտ գոյություն ունի իրականում և ինչ որ ճանաչել են մեր երկրի աշխատավոր մասսաները:

Միմիայն Կոմունիստական կուսակցության ղեկավարությունն ապահովեց պրոլետարական հեղափոխության հաղթությունը և բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության կառուցու-



մը: Նոր Սահմանադրությամբ, որն ուղղակի մատնացույց է անում Կոմունիստական կուսակցության ղեկավար նշանակությունը ԽՍՀՄ-ի պետական և հասարակական կազմակերպություններում, աշխատավորներն արտահայտում են իրենց համերաշխությունը մեր կուսակցության բոլշևիկյան քաղաքականության և լիակատար կոմունիզմ իրականացնելու նրա նպատակների հետ, կոմունիզմ՝ բառիս բուն իմաստով (ծափահարություններ):

Մեր կուսակցությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, վայելում է աշխատավորների անսահման վստահությունը: Նա, իհարկե, լիովին վստահելի է ԽՍՀՄ-ի բանվորների, գյուղացիների ու աշխատավոր ինտելիգենցիայի այդ վստահությունն ու սերը: Նրա հեղինակությունը բարձր է նաև Խորհրդային Միության սահմաններից դուրս:

Այդ չի նշանակում, որ նա թշնամիներ չունի:

Նա ունի նույն թշնամիները, ինչ որ ունեն բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, աշխատավոր խորհրդային ինտելիգենցիան: Այլ խոս-

քով՝ մեր կուսակցության թշնամիներն են
հանդիսանում սոցիալիզմի թշնամիները,
բանվորների և գյուղացիների սոցիալիս-
տական պետության թշնամիները: Լենի-
նի-Ստալինի կուսակցության թշնամիներն
են հանդիսանում այժմ նրանք, ովքեր ու-
զում են վերականգնել կապիտալիզմն ու
վերադարձնել բուրժուազիայի իշխանու-
թյունը և այդ պատճառով ամբողջ հոգով
ատում են ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրու-
թյունը, վորը մարդկանց ցույց է տալիս
յերջանիկ կյանքի՝ կոմունիզմի ճանապար-
հը:

Կոմունիզմի թշնամիների այդ գայլերի
վոհմակում այժմ վերջին տեղը չեն գրա-
վում պարոն տրոցկիստները, վորոնք
բուրժուազիայի հետ մի ընդհանուր նպա-
տակ ունեն: Ինչպես հայտնի յե՝ այդ
մարդիկ ի հաճույս բուրժուական պետու-
թյունների և նրանց ցուցումներով դի-
մեցին ամենակեղտոտ և ամենաստոր հա-
կահեղափոխական գործերի:

Մեզ համար հասկանալի յե ամեն բանի
պատրաստ այդ բուրժուական այլասերված-
ների կատաղությունն ու անսկզբունքայ-
նությունը, մարդիկ, վորոնք մեր կուսակ-



ցության և սոցիալիզմի բոլոր ազնիվ կա-
ռուցողներին ատում են ռեննեգատներին
արժանի կատաղությամբ: Հայտնի յե, վոր
նրանք ձայնակիցներ ու գործակիցներ ու-
նեն նաև աջ թափթփուկներից:

Ի՞նչ կա վոր: Մենք գիտենք, թե ինչ-
պես պետք է վարվել հեղափոխության
թափթփուկների հետ:

Ակնհայտ է, վոր պետք է ուժեղացնել
պայքարը մեր պետական ապարատի մի
քանի ղեկավարների անհոգության և զի-
ջողականության դեմ: Պետք է բարձ-
րացնել հեղափոխական զգաստությունն աշ-
խատավորների շարքերում: Հարկավոր է
վոչ թե խոսքով, այլ գործով հիշել դասա-
կարգային թշնամու մասին և բարձրացնել
մասսաների կոմունիստական գիտակցու-
թյունը: Մաքրել ճանապարհը թշնամինե-
րից՝ նշանակում է արձակել մասսաների ու-
ժերը կոմունիզմի լիակատար հաղթանակի
համար մղվող պայքարում (ծափահարու-
թյուններ):

Ինչ էլ ձեռնարկեն մեր դասակարգային
թշնամիները այստեղ և Խորհրդային Միու-
թյան սահմաններից դուրս, մեր ուժերն ա-
րագորեն աճում են:

Բարձրանում են իրենց գործի տեխնիկայի տիրապետած, իրենց ամբողջ արտադրությանը, իսկական նոր կուլտուրային տիրապետած միլիոնավոր մարդիկ: Վո՛չ գաղտնի լրտեսների ու յերկերեսանիների ավերիչ աշխատանքով, վո՛չ էլ ծանր հրանոթների արկերով չես ջարդի և չես կազմալուծի այդ բազմամիլիոն շարքերը (բուռն ծափահարություններ):

Աննախընթաց արագությամբ բարձրանում են աշխատանքի նոր հերոսներ— սոցիալիստական շինարարության՝ բարձր տեխնիկայով զինված հարվածայինները—մեր պանծալի ստախանովականները և ստախանովուհիները (ծափահարություններ):

Մեր ամբողջ յերկրին հայտնի յեն դառնում բանվորների ու բանվորուհիների, կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, կուլտուրայի, տեխնիկայի, գիտության ու արվեստի մարդկանց նորանոր անուններ, և ամեն մի այդպիսի անուն ազդանշան է ծառայում նորանորների հրապարակ գալուն:

Հանձինս ոդի, ծովի և Արկտիկայի հերոսների, տարերքի դեմ մղվող պայքարի հերոսների, վորոնց շարքերն աճում են մեր աչքի առջև, մենք տեսնում ենք ԽՍՀՄ-ի



ամեն մի թշնամու դեմ մղվող պայքարի հերոսների նախապատկերը (բուռն ծափահարություններ):

Մենք պետք է ինչպես հարկն է զինվենք այն ամենով, ինչ վոր հարկավոր է, վորպեսզի թշնամին գիտենա, վոր մեզ հետ հանաք անել չի կարելի:

Այժմ մեր պաշտպանության պանծալի զինանոցը կմտնի նաև սոցիալիզմի «ստալինյան Սահմանադրությունը» (ծափահարություններ):

Մարքսիզմ-լենինիզմի դրոշի տակ, Լենինի-Ստալինի կուսակցության դրոշի տակ, ստալինյան Սահմանադրության դրոշի տակ՝ առա՛ջ, դեպի կոմունիզմ (բուռն ծափահարություններ, աղմկալից ովացիաներ, «ուռա»-ներ, վողջույնի բացականչություններ ընկեր Մոլոտովի հասցեյին, բացականչություններ «կեցցե՛ ստալինյան Սահմանադրությունը», «ուռա»):

# ԽՍՀՄ-Ն ՀԱՄԱՅՆ ԱՇԽԱՐՀԻ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀՈՒԺԿՈՒ ՀԵՆԱՐԱՆՆ Է

## ԽՍՀՄ-Ի ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐ ԸՆԿԵՐ Մ. Մ. ԼԻՏՎԻՆՈՎԻ ՃԱՌԸ՝

**Արտասանած Խորհուրդների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարում**

*Ընկերնե՛ր, համագումարի պատգամավորնե՛ր:*

*Թույլ տվեք նախ և առաջ նախազգուշացնել ձեզ, որ այսօր յես հանդես եմ գալիս այստեղ ոչ թե միջազգային կացության տեսությամբ, որովհետև համագումարի օրակարգում այդպիսի կետ չկա* (ծիծաղ, հավանության նշաններ), *այլ Սահմանադրության նախագծի վերաբերյալ զեկուցման առթիվ: Ընկեր Ստալինը նշեց այն հետա-*



*քրքրությունը, որին արժանի յե արտասահմանի հասարակական կարծիքը Սահմանադրության նախագծի վերաբերյալ, և յես որպես մի մարդ, որը նստած է արտասահմանին նայող պատուհանի մոտ* (ծիծաղ), *ուզում եմ ձեզ հաղորդակից դարձնել այդ նյութի շուրջ մի քանի մտքերի:*

*Ընկեր Ստալինը տվեց Սահմանադրության նախագծի արտասահմանյան քննադատության փայլուն և ամենասրամիտ վերլուծումը: Սակայն պետք է խոստովանել, որ Սահմանադրության նախագիծն արտասահմանում դիմավորվեց ո՛չ միայն քննադատությամբ, ո՛չ միայն տարակուսանքներով ու սկեպտիցիզմով, այլև խրախուսական ու գովասանական արձագանքներով: Արտասահմանի հասարակական կարծիքի մի քանի շրջաններում հակում յերևաց հովանավորող դիրք բռնելու մեր նկատմամբ որպես զղջացած, իր ընտանիքը վերադարձած մոլորյալ զավակի նկատմամբ: Իբր թե Խորհրդային Միությունը վերադարձել է դեպի յեվրոպական դեմոկրատիզմը, դեպի բուրժուական ազատությունները: Յես ուզում եմ մի քանի ճշգրտումներ մտցնել այդ հարցում:*

# ՖԱՇԻԶՄԸ ԻԲՐԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ԵՎ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԵԶՄԱՆԱՓՈՐ

Մենք, մարքսիստներս, միշտ հատուկ կարծիք ենք ունեցել դեմոկրատիզմի և բուրժուական ազատությունների էության մասին: Այդ կարծիքն արտահայտեց ընկեր Ստալինը, յերբ իր զեկուցման մեջ խորհրդային Սահմանադրության տված ազատությունները համեմատում էր նույնանուն, բայց բնավ վոչ հավասար նշանակություն ունեցող բուրժուական ազատությունների հետ: Բայց վերցնելով նույնիսկ այդ ազատությունները նրանց պայմանական, սահմանափակ նշանակությամբ, վորով դրանք 18-րդ դարի վերջերին և 19-րդ դարի ընթացքում անտարակույս խոշոր առաջադիմական դեր են խաղացել և բուրժուազիան իրավամբ պարծենում էր դրանցով ֆրանսիական հեղափոխության ժամանակներից, մենք կարծեմ այժմ կարող ենք խոսել այդ ազատությունների մասին. վորպես այնպիսի մի բանի մասին, վորն անցյալի գիրկն է անցնում:

Ինչպես, յեվրոպական բուրժուական



26 յերկրներից այսպես կոչված դեմոկրատիզմը և բուրժուական ազատությունները պահպանվել են հազիվ թե 10-ից ավելի յերկրներում: Մյուս 16 յերկրները, այսինքն՝ բուրժուական Յեվրոպայի յերկու յերրորդ մասը, ունեն ֆաշիստական կամ կիսաֆաշիստական դիկտատուրայի ռեժիմ: Վորոշ դեպքերում ֆաշիստական և կիսաֆաշիստական յերկրների տարբերությունը վոչ թե վորակական, այլ քանակական է: Դա ավելի շուտ յերանգների կամ նույնիսկ սոսկ արտաքին նշանների տարբերություն է: Մի քանի յերկրներ իրենց բացե ի բաց ֆաշիստական են հայտարարում, իսկ մյուսներն իրենց ամբողջ քաղաքական ու սոցիալական կազմակերպությամբ նմանվելով ֆաշիստական յերկրներին, ներքին, իսկ յերբեմն նաև արտաքին քաղաքականության նկատառումներով, գերադասում են խուսափել ֆաշիստական անունից:

Թե ինչ կերպարանք ունեն դեմոկրատիզմն ու ազատությունները ֆաշիստական յերկրներում, ավելորդ է պատմել: Ֆաշիզմն ինքը պարծենում է, թե նա հանդիսանում է դեմոկրատիզմի և ամեն տեսակ ազատությունների ժխտումը: Վորովհետև,

ի՞նչ է ներկայացնում ֆաշիզմը: Ես կուզեյի տալ նրա՝ ոչ թե փիլիսոփայական կամ գիտական, այլ կենցաղային, հանրահասկանալի և միևնույն ժամանակ ճիշտ բնորոշում: Մենք, ընկերներ, ձեզ հետ միասին գիտենք, թե ինչպիսի հակասություններ են քայքայում բուրժուական հասարակությունը: Այդ հակասությունները ոչ միայն հնարավոր չէ վերացնել, այլև դրանք անխուսափելիորեն աճում ու բազմանում են: Դրանք առանձնապես սուր բնույթ ստացան համաշխարհային պատերազմի հետևանքով և ցայտուն արտահայտություն ստացան 1929 թվականին սկսված տնտեսական ճգնաժամում: Մի քանի երկրներում իշխանության ղեկին իրար փոխարինող բուրժուական ոչ մի կուսակցություն չէր հաջողվում հաղթահարել այդ ճգնաժամը: Այդ հողի վրա աճում էր քաղաքացիների դժգոհությունը: Եվ ահա քաղաքական ասպարեզն է ելնում, կամ «նախախնամության կողմից ուղարկվում է» մի հանճարեղ մարդ, որը հանձն է առնում դուրս բերել պետությունը դժվարին դրությունից, առանց ձեռք տալու նրա հիմունքներին: Նա



գործի յե դնում նույնքան «հանճարեղ», որքան և պարզ միջոց: Եթե հնարավոր չէ վերացնել գոյություն ունեցող դժգոհությունը և վերջինս ծնող պատճառները, ապա միանգամայն հեշտ է վերացնել դժգոհներին (ընդհանուր ծիծաղ), բավական է արգելել քաղաքացիներին դժգոհություն արտահայտել, զրկել նրանց մտքեր, ցանկություններ ու պահանջներ արտահայտելու բոլոր միջոցներից, զրկել նրանց թերթերից, ժողովներից, միություններից, կուսակցություններից, իսկ համառողների և հատկապես անզգույշ մեղավոր յեղածների համար կառուցել ու հարմարեցնել որոշ թվով բանտեր ու համակենտրոնացման ճամբարներ, ինչպես և կախաղաններ ու կառափնարաններ, իսկ ազգաբնակչության մի մասն իր ոչ պատշաճ ծագում ունենալու պատճառով որենքից դուրս հայտարարել և տալ ազգաբնակչության մյուս մասի ձեռքը՝ խեղդելու ու կողոպտելու: Հենց այդ է կոչվում ֆաշիզմ (ծիծաղ, ծափեր): Եվ ի՞նչ տեղ ունեն այստեղ դեմոկրատիզմն ու ազատությունները:

Բայց դուք գուցե կասեք, որ քաղաքացիների սանձահարման այդ մեթոդն որիգի-

նալ լինելու հավակնություն չի կարող ունենալ։ Իսկ ձեզնից նրանք, ովքեր կարդացել են գրող Գլեբ Ուսպենսկու գրքերը, թերևս կվերհիշեն, վոր այդ մեթոդը կատարելապես համապատասխանում է վոստիկանական պահակ Միմրեցովի կլասիկ կանոնին՝ «քաշ տալ և բաց չթողնել» (ծիծաղ, ծափեր)։

Ձեզնից վոմանք թերևս կասեն, թե ֆաշիստական կուսակցության նախատիպը պետք է համարել մեր ավագ սերնդին քաջածանոթ «Ռուս ժողովրդի միությունը» կամ «Միխայիլ Արխանգելի միությունը» (ծիծաղ, ծափեր)։ Ցես ընկերներ, ձեզ հետ չեմ վիճի (ծափեր)։ Ցես ուզում եյի միայն ձեզ գաղափար տալ, թե ինչ վիճակի մեջ են ազատություններն որինակելի ֆաշիստական պետության մեջ, վորին ավելի կամ պակաս մոտենում են ֆաշիստական կամ կիսաֆաշիստական յերկրները։ Այդպիսի մի քանի կիսաֆաշիստական յերկրների առանձնահատկությունը պետք է համարել զինվորականության տիրապետող ազդեցությունը, զինվորականության, վորը հրամաններ է տալիս պաշտոնական կառավարությանը, սպառնում է նրան տեռո-



րով, իսկ յերբեմն նաև իրականացնում է տեռորը և հանդիսանում է պետության փաստական տերը։ Պետության սպասավորից, վորպիսին կարծես թե պետք է լինի բանակը դեմոկրատիկ պետության մեջ, նա փաստորեն դառնում է նրան հրամայողը։

Ինչպես արդեն ասացի, Յեվրոպայում այնուամենայնիվ մնացել է 10 յերկիր, վորոնք դեռ պահպանել են դեմոկրատական փիլոնների մաքրությունը։ Պահպանե՞լ են։ Այո, բայց արդյոք յերկա՞ր կպահպանեն. ահա թե վորն է հարցը։

Համենայն դեպս այդ յերկրներում, առատորեն վարձատրվող ֆաշիստական ազդեցության և ագիտացիայի շնորհիվ, ծընունդ են առնում ու ամրանում այնպիսի տարրեր, վորոնք բացե ի բաց քարոզում են վոչնչացնել դեմոկրատիզմի ու դեմոկրատիկ ազատությունների մնացորդները։ Այդ յերկրների մեծ մասում գործնականորեն արդեն հարց է դրվում այս կամ այն կուսակցությունն արգելելու մասին, ընդ վորում դուրս է գալիս, վոր սովորաբար այդպիսի կուսակցությունները հանդիսանում են, իհարկե, բանվոր դասակարգի և գյուղացիության կուսակցություն

ները, դժգոհների կուսակցությունները: Ինչպես մենք տեսանք, դժգոհներին արհեստականորեն ճնշելը և նրանց միանալու հնարավորություններից զրկելը հենց ֆաշիզմի սկիզբն է: Պատահում է, որ ազգաբնակչության հսկայական մեծամասնության և պարլամենտի մեծամասնության վրա հենվող կառավարությունը, տառացիորեն ահաբեկվում է և հարկադրված է լինում ականջ դնել առավելապես փոքրամասնության ձայնին, յեթե միայն վերջինս իր տրամադրության տակ ունի մամուլի բավական քանակությամբ ժիր ու զուգուան որգաններ: Այդպիսի թերթերի ձայնը հրամցնում են որպես յերկրի հասարակական կարծիքը, իսկ թե այդ որքան է համապատասխանում իրականությանը, մենք վերջերս տեսանք Ամերիկայի Միացյալ Նահանգներում տեղի ունեցած ընտրությունների օրինակով: Այդ յերկրի մամուլի 90 տոկոսը հանդես եր գալիս Նախագահ Ռուզվելտի դեմ: Կարելի յեր կարծել— յեթե թերթերը համարենք հասարակական կարծիքի արտահայտիչը— թե ամբողջ յերկիրը պարոն Ռուզվելտի դեմ է, այնուհանդերձ պարոն Ռուզվելտը փայլուն հաղթանակ տա-



րավ ընտրությունների ժամանակ, ստանալով ձայների ճնշող մեծամասնությունը: Կատարելապես պարզ է, որ յերկրի հասարակական կարծիքի արտահայտիչը լինելու հավակնություն ունեցող մամուլի ընդհանուր ձայնը յերբեմն չնչին փոքրամասնություն է ներկայացնում, իսկ յերբեմն՝ լոկ մի քանի լրագրային մագնատների կամ այդ թերթերը ֆինանսավորող արդյունաբերական տրեստների կարծիքը: Այնուամենայնիվ այդպիսի թերթեր հաճախ հսկայական ազդեցություն են գործում յերկրի ներքին ու արտաքին քաղաքականության վրա, անդամալուծում են դեմոկրատիկ կառավարության գործողությունները:

Նույնիսկ դեմոկրատիկ յերկրներում քաղաքականության վրա ճնշում գործադրող խոշոր գործոն է հանդիսանում յերբեմն նաև զինվորականության վերնախավը: Հազիվ թե այդպիսի կացությունն իրոք համապատասխանում է դեմոկրատիա հասկացողությանը: Իսկ յեթե այդպիսի յերկրում այժմ գտնվում են ազնիվ ռադիկալ տարրեր, որոնք բանվորների ու գյուղացիների հետ միասին փորձում են պաշտպանել դեմոկրատիկ հասարակակարգը և ազատու-

թյունները, ապա նրանք կատաղի գրոհի յեն յենթարկվում սեփական ֆաշիստ տարրերի կողմից։ Յերբեմն էլ բռնի կերպով տապալվում են իրենց զինվորականության կողմից, վորին ոգնության են հասնում ֆաշիստական ու կիսաֆաշիստական յերկրները։ Դրա փայլուն որինակը մենք տեսնում ենք Իսպանիում, վորն ուներ բուրժուական դեմոկրատիզմ՝ բոլոր կանոններով կատարված ընդհանուր ընտրություններով կազմված կառավարություն։ Բայց վորովհետև այդ կառավարությունը հռչակեց դեմոկրատիզմի պահպանման, ազատությունների պահպանման, պարլամենտարիզմի պահպանման ծրագիր, ուստի նրա դեմ ապստամբեցին մի բուռ գեներալներ ու սպաներ, վորոնք ոժանդակություն են ստանում ոտարերկրյա ֆաշիստական կառավարություններից և փորձում են տապալել իսպանական կառավարությունը ֆաշիզմի նշանաբանով։ Սակայն ամենից ավելի բնորոշն այն է, վոր այդ բացահայտ կազմակերպված պայքարը համակրական վերաբերմունք և նույնիսկ եյական ոժանդակություն է գտնում դեմոկրատիկ պետությունների կողմից։



## ԱՐԵՎՄՏԱ-ՅԵՎՐՈՊԱԿԱՆ ՅԵՐԿՐՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ՍՊԱՌՆԱԼԻՔԻ ՏԱԿ Է

Ահա ընկերներ, ինչպիսի ճակատագիր ունեն ներկայումս դեմոկրատիզմը և բուրժուական ազատությունները Յեվրոպայում և ահա թե ինչու մենք չենք կարող մեզ առանձնապես շոյված համարել, յերբ Սահմանադրության նախագծի կապակցությամբ մեզ ասում են, թե մենք վերադառնում ենք յեվրոպական դեմոկրատիզմի գիրկը, բուրժուական ազատություններին։ Ավելի ճիշտ կլինի ասել, վոր մենք վերցնում ենք դառամող բուրժուազիայի թույլ ձեռքերից վայր ընկնող դեմոկրատիզմի դրոշը, ազատությունների դրոշը և այդ հասկացողությունները լցնում ենք նոր, հարուստ, խորհրդային բովանդակությամբ (ծափեր)։ Սակայն, Խորհրդային Միությունը դառնալով դեմոկրատիզմի ու ազատությունների հենարանը, կոչ չի անում ստեղծել միջազգային բլոկ՝ պայքար մղելու դեմոկրատիան ու ազատությունները ժխտող ֆաշիզմի դեմ։ Մենք, վորպես պետություն, գործ չունենք այս կամ այն

երկրի ներքին ֆաշիստական ռեժիմի հետ: Մյուս երկրների հետ ունեցած մեր համագործակցությունը, Ազգերի Լիգային ունեցած մեր մասնակցությունը հիմնված են երկու սիստեմների՝ սոցիալիստականի ու կապիտալիստականի խաղաղ համակեցության սկզբունքի վրա, ընդ որում մենք կարծում ենք, որ կապիտալիստականի մեջ է մտնում նաև ֆաշիստական կարգը: Սակայն այժմ ֆաշիզմը դադարում է այն երկրների ներքին գործը լինելուց, որոնք ֆաշիզմ են քարոզում: Կար ժամանակ, երբ ֆաշիզմի նախահայր պարոն Մուսսոլինին հայտարարում էր, թե ֆաշիզմն արտահանման առարկա չէ: Պետք է արդարացի լինել և ասել, որ պարոն Մուսսոլինին երկար տարիներ հավատարիմ էր իր հայտարարությանը և Իտալիայի սահմաններից դուրս ֆաշիզմը տարածելու համար պայքար մղելը նրա արտաքին քաղաքականության տարրը չէր կազմում: Բայց այդ տևեց լոկ այնքան, մինչև որ պարոն Մուսսոլինիի ֆաշիզմը Բեռլինում անցավ կատարելագործման կուրսը, կամ, ինչպես մեզ մոտ են ասում, վերավորակավորման կուրսը (ծիծաղ, ծափեր) և բեղմնա-



վորվեց գերմանական, այսպես կոչված նացիոնալ-սոցիալիզմի թեորիաներով: Ի տարբերություն իտալական ֆաշիզմի, գերմանական նացիոնալ-սոցիալիզմը, հենց որ հիմնավորվեց իր երկրի ներսում, իր գործունեությունը փոխադրեց նաև երկրի սահմաններից դուրս: Փաստերով հաստատված է, որ նացիոնալ-սոցիալիստական կուսակցության գործունեությունը, որն իր լայն ճյուղավորված գործակալությունն ունի համարյա բոլոր երկրներում, չի սահմանափակվում, այդ երկրների հիշյալ գործակալությունների անդամների սոցիալական ու կուլտուրական սպասարկմամբ, ինչպես ուզում են մեզ հավատացնել ֆաշիզմի պաշտոնական ներկայացուցիչները: Հաստատված է, որ այդ գործակալությունները լայն ագիտացիա են մղում իրենց ապրած երկրի քաղաքացիների մեջ, ակտիվ կերպով խառնվում են այդ երկրների ներքին քաղաքականությանը, մի կուսակցությունը գրգռում են մյուսների դեմ, ստեղծում են մամուլի օրգաններ և ֆինանսավորում դրանց, չեն խորշում հետախուզական գործունեությունից և կանգ չեն առնում նույնիսկ տեռորիստական գործու-

նեյության առջև, բնավ հաշվի չառնելով այն յերկրի որենքները, վոր հյուրընկալել է նրանց: Վերջերս այդպիսի գործակալություն հայտաբերվեց նաև մեր Խորհրդային Միության մեջ: Սակայն մեզ ամենևին չի վախեցնում ֆաշիզմի նաև այդ արտասահմանյան գործունեությունը: Դա իրական ու մեծ սպառնալիք է այլ յերկրների համար, նրանց բուն գոյության համար, բայց վոչ մեզ համար: Մենք հեշտությամբ հաշիվ կտեսնենք նրանց հետ խորհրդային տերիտորիայում (ծափեր) սեփական ուժերով, մենք դրա դեմ պայքարելու համար ոտարերկրյա ոգնություն չենք խնդրի և դրա համար միջազգային դաշինքներ ու համաձայնություններ չենք կնքի (ծափահարություններ, ծիծաղ):

## ԽՌՈՎԱՐԱՐ ԳԵՆԵՐԱԼՆԵՐԻ ՅԵՎ ԻՆՏԵՐՎԵՆՏՆԵՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԻՍՊԱՆԻԱՅԻ ԴԵՄ

Ֆաշիզմի արտասահմանյան գործունեությունն ավելի լուրջ է, յերբ ստանում է այնպիսի ձևեր, ինչպես որինակ՝ Իսպանիայում: Ներկայումս վոչ մի տարակույս



չկա, վոր Իսպանիայի դեմոկրատիկ ընտրությունների ժամանակ աջ կուսակցությունների ջախջախումից հետո,—ընտրություններ, վորոնք դրսևորեցին ժողովրդի վստահությունն ու նվիրվածությունն այդ ընտրություններով կազմված իսպանական կառավարության հանդեպ,—խռովարար գեներալները չեյին հանդգնի խռովություն բարձրացնել այդ կառավարության դեմ, յեթե նրանց նախապես խոստացված չլիներ գերմանական կամ իտալական ֆաշիզմի, գուցե և յերկուսի միասին ոժանդակությունը: Յեվ այդ ոժանդակությունը վոչ միայն խոստացվել եր, — այլև ցույց տրվեց: Գեներալների խռովության կոչն արձագանք չգտավ իսպանական բանակի զինվորների ու նավաստիների մեջ և գեներալները, հարկադրված յեղան դիմելու մարոկկոցիների ու ոտարերկրյա լեգեոնի ոգնությանը, այսինքն մի լեգեոնի, վորը հավաքագրվում է միջազգային արկածախնդիր ու քրեական տարրերից: Այդ ուժերով յեկավ գեներալ Ֆրանկոն իսպանական ժողովրդի դեմ, դրանցով նա արշավում է Իսպանիայի մայրաքաղաքի վրա: Բայց. Մարոկկոյում գտնվող այդ ուժերն ել չեյին

կարող Իսպանիա փոխադրվել, յեթե Ֆրանկոյի տրամադրության տակ չդրվեյին գերմանական ու իտալական ինքնաթիռները և սավառնակները: Նկատի ունեցեք, վոր այդ ժամանակ Գերմանիան և Իտալիան դեռ դիվանագիտական հարաբերություններ եյին պահպանում իսպանական կառավարության հետ և նրանց կողմից Իսպանիայի ներքին պայքարին միջամտելը հանդիսանում եր միջազգային տարրական պարտավորությունների աղաղակող խախտում: Գերմանական ֆաշիզմը, վորն զգեստավորվում ե արիական ռասայի պաշտպանի պատմուճանով, ըստ յերևույթին բնավ խղճի խայթ չի զգում այն բանից, վոր հարկադրված ե իսպանական արիական ժողովրդի դեմ կռվի տանել վոչ արիացի մավրերին (ծափահարություններ, ծիծաղ, աշխուժություն դահլիճում): Գերմանիան և Իտալիան առանց բնավ քաշվելու հայտարարում են, թե իրենք գեներալ Ֆրանկոյին օժանդակում են այն պատճառով, վոր չեն ուզում Իսպանիայում ունենալ դեմոկրատիկ կառավարություն, միասնական ճակատի կառավարություն, այլ ուզում են տեսնել այնտեղ գեներալ Ֆրանկոյի կող-



մից խոստացված մի կառավարություն՝ հիմնված ֆաշիստական սկզբունքների վրա: Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր Գերմանիային և Իտալիային բնավ հարկավոր չե Իսպանիայում ֆաշիզմ հանուն ֆաշիզմի, վոչ ել վորևե իդեոլոգիական ուսմունքի հաստատում: Տվյալ դեպքում ֆաշիզմը մի միջոց ե կատարելապես այլ, բնավ վոչ իդեոլոգիական նպատակների հասնելու համար:

## «ՉՄԻՋԱՄՏԵԼՈՒ» ՖԱՐՍԸ

Ֆրանսիայի և Անգլիայի նախաձեռնությամբ, խաղաղությանն սպառնացող միջազգային հնարավոր բարդությունները կանխելու դրդապատճառներով, առաջադրվեց իսպանական կառավարությանը կամ խռովարարներին վորևե ռազմամթերք չմատակարարելու՝ իսպանական գործերին չըմիջամտելու միջազգային համաձայնությունը: Այդ առաջարկն անտարակույս հակասակ եր միջազգային հարաբերությունների տարրական գաղափարին, վորը թույլ ե տալիս ամեն տեսակ զենք մատակարարել մի կառավարության կողմից իր ճանաչած

կարող Իսպանիա փոխադրվել, յեթե Ֆրանկոյի տրամադրության տակ չդրվեյին գերմանական ու իտալական ինքնաթիռները և ռազմանավերը: Նկատի ունեցեք, վոր այդ ժամանակ Գերմանիան և Իտալիան դեռ դիվանագիտական հարաբերություններ եյին պահպանում իսպանական կառավարության հետ և նրանց կողմից Իսպանիայի ներքին պայքարին միջամտելը հանդիսանում եր միջազգային տարրական պարտավորությունների աղաղակող խախտում: Գերմանական ֆաշիզմը, վորն զգեստավորվում է արիական ռասսայի պաշտպանի պատմուճանով, ըստ յերևույթին բնավ խղճի խայթ չի զգում այն բանից, վոր հարկադրված է իսպանական արիական ժողովրդի դեմ կռվի տանել վոչ արիացի մավրերին (ծափահարություններ, ծիծաղ, աշխուժություն դահլիճում): Գերմանիան և Իտալիան առանց բնավ քաշվելու հայտարարում են, թե իրենք գեներալ Ֆրանկոյին ոժանդակում են այն պատճառով, վոր չեն ուզում Իսպանիայում ունենալ դեմոկրատիկ կառավարություն, միասնական ճակատի կառավարություն, այլ ուզում են տեսնել այնտեղ գեներալ Ֆրանկոյի կող-



մից խոստացված մի կառավարություն՝ հիմնված ֆաշիստական սկզբունքների վրա: Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր Գերմանիային և Իտալիային բնավ հարկավոր չե Իսպանիայում ֆաշիզմ հանուն ֆաշիզմի, վոչ էլ վորևե իդեոլոգիական ուսմունքի հաստատում: Տվյալ դեպքում ֆաշիզմը մի միջոց է կատարելապես, այլ, բնավ վոչ իդեոլոգիական նպատակների հասնելու համար:

## «ՉՄԻՋԱՄՏԵԼՈՒ» ՖԱՐՍԸ

Ֆրանսիայի և Անգլիայի նախաձեռնությամբ, խաղաղությանն սպառնացող միջազգային հնարավոր բարդությունները կանխելու դրդապատճառներով, ստորագրվեց իսպանական կառավարությանը կամ խռովարարներին վորևե ռազմամթերք չմատակարարելու՝ իսպանական գործերին չմիջամտելու միջազգային համաձայնությունը: Այդ առաջարկն անտարակույս հակառակ եր միջազգային հարաբերությունների տարրական գաղափարին, վորը թույլ է տալիս ամեն տեսակ զենք մատակարարել մի կառավարության կողմից իր ճանաչած

մյուս կառավարությանը և արգելում է նույնը մատակարարել վորևէ այնպիսի յերկրի խռովարարներին, վորի հետ դիվանագիտական հարաբերություններ են պահպանվում: Այնուամենայնիվ հաշվի առնելով այն պաշտոնական փաստարկումները, վորոնցով հիմնավորված եր այդ առաջարկը, խորհրդային կառավարությունը միացավ դրան: Բայց դրանից, նա յենթադրում եր, վոր ըստ եյության այդ համաձայնությունը, բոլորի կողմից լոյալորեն պահպանվելու դեպքում, վնաս չի հասցնի իսպանական կառավարությանը, վորովհետև գեներալ Ֆրանկոն ինքն իր գլխին թողնվելու դեպքում վոչ մի շանս չուներ խռովության ճնշումը կանխելու: Կրկնում եմ, համաձայնությանը մեր միանալու ինքնըստինքյան հասկանալի նախադրյալն եր այդ համաձայնության լոյալ կատարումը նրա բոլոր մասնակիցների կողմից: Գերմանիան և Իտալիան, ինչպես և ֆաշիստական Փորթուգալիան, յերկար ժամանակ ձգձգում եյին իրենց պատասխանը չմիջամտելու համաձայնությանը միանալու առաջարկին, զանազան պատրվակներով ձգձգում եյին այդ նյութի շուրջը բանակցություն-



ները վարելը և այդպիսով շահած ժամանակն օգտագործեցին գեներալ Ֆրանկոյին արագորեն ու առատությամբ տանկեր, հրետանի և սպառազինման այլ առարկաներ մատակարարելու համար: Նրանց այդ անհրաժեշտ եր նրա համար, վորպեսզի հետագայում Իսպանիայում գերմանական ու իտալական սպառազինում յերեվան բերվելու դեպքում կարելի լիներ արդարանալ, թե դա Իսպանիա յե ընկել համաձայնությունն ստորագրելուց առաջ: Բայց ահա համաձայնությունն ստորագրեցին նաև ֆաշիստական յերկրները:

Շաբաթներն անցնում եյին շաբաթների հետևից և ԽՍՀՄ-ն, Ֆրանսիան, Անգլիան ու մյուս պետությունները լոյալ ու բծախնդիր կերպով կատարում եյին իրենց պարտավորությունները, մինչդեռ Գերմանիան և Իտալիան միջազգային հարաբերությունների հանդեպ ունեցած իրենց հատուկ արհամարհանքով շարունակում եյին գաղտնի կերպով, օգտագործելով առավելապես փորթուգալական պլացդարմը, գեներալ Ֆրանկոյին մատակարարել ամեն տեսակ ռազմական ու ծովային սպառազինություն: Այդ մատակարարումը խայտա-

ռակություն, առակ ու ծանակ է դարձել: Դրա մասին գրել են քաղաքական բոլոր ուղղությունների, ներառյալ նաև ամենաաջ ուղղությունների պատկանող. օտարերկրյա թերթերի թղթակիցները. դրա մասին պատմել են բազմաթիվ ականատեսներ ու վկաներ: Այդ անտարակույս հայտնի յեր նաև համապատասխան նավահանգիստներում գտնվող օտարերկրյա հյուպատոսներին, վորոնց զեկուցագրերը ցավոք սրտի մինչեվ այժմ չեն հրապարակվել:

Վերջապես իսպանական կառավարությունը Ազգերի Լիգայում և առանձին պետություններին ուղղած հայտագրերով ձեվականորեն հայտարարեց, վոր գեներալ Ֆրանկոյին ապօրինի կերպով սպառազինություն է տրվում, կրկնակի ապօրինի՝ նախ սովորութային իրավունքի տեսակետից և յերկրորդ՝ կայացած միջազգային համաձայնության հետևանքով:

Այն ժամանակ խորհրդային կառավարությունը դիմեց դեսպանների Լոնդոնի կոմիտեյին, վորը, ինչպես թվում եր մեզ, ստեղծվել եր ապահովելու համար համաձայնության բոլոր մասնակիցների



ստանձնած պարտավորությունների պահպանումը և այդ պարտավորությունների խախտման դեպքերի քննությունը: Սակայն մենք սխալվեցինք: Լոնդոնի կոմիտեն չմիջամտել խոսքը հասկացավ այն մտքով, թե նա ինքը չպետք է միջամտի իսպանական դեպքերին միջամտելու գործին (ծիծաղ): Լոնդոնի կոմիտեն իր խնդիրը հասկացավ այն իմաստով, թե ինքը պետք է հետևի միայն, վոր չմիջամտելու համաձայնությամբ վորոշ պարտավորություններ ստանձնած պետությունները իրենք չխոստովանեն այդ պարտավորությունների խախտումը և քանի դեռ նրանք ժխտում են իրենց ամեն մի հանցանքը, ապա նրանց բացատրությունները բավարար են համարվում ու դրանով վերջանում են կոմիտեյի ֆունկցիաները (ծիծաղ):

Կոմիտեյի այդպիսի վորոշումը նախապես սանկցիա չեր տալիս, վորպեսզի ֆաշիստական պետությունները առաջիկայում ևս ամեն կերպ խախտեն իրենց պարտավորությունները: Խորհրդային կառավարությանն այլևս վոչինչ չեր մնում անելու քան Լոնդոնի Կոմիտեյին վոյալ

ները ովացիայով դառնում են իսպանական հանրապետության դեսպան պարոն Պասկուային, որը գտնվում է դիվանագիտական օթյակում՝ «կեցցե՛ իսպանական հերոս ժողովուրդը»)։

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆՆ ԻՍՊԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ

*Ի՞նչումն է կայանում մեր խորհրդային պետության հետաքրքրությունը դեպի իսպանական դեպքերը։ Մեր Միության ազգաբնակությունն իսպանական կանանց ու երեխաների ողջին իր կատարած առատաձեռն նվիրատվություններով, իր կոլեկտիվ բանաձևերով և Իսպանիայի հասցեին ուղղված ողջույններով ու այլ ցույցերով վկայում էր իր կենդանի համակրանքի մասին, որով ինքն ամենադեմոկրատիկ և ամենաազատ երկրից հետևում է այն քաջարի ու տանջալից պայքարին, որը մղում է թեկուզ և հեռավոր մի երկրի ժողովուրդը հանուն իր դեմոկրատիզմի, հանուն իր ազատությունների, ընդդեմ ֆաշիստական*



*բարբարոսության, ընդդեմ ֆաշիստական ստրկացման։ Նույնն է վկայում նաև հենց նոր ձեր արած ցույցը։*

*Սակայն դա գործի միայն հուզական կողմն է. կա նաև քաղաքական-պետական կողմը, որը և ուզում եմ բացատրել։ Մեր թշնամիները պնդում են, թե մենք իբր ձգտում ենք Պիրենյան թերակղզում ստեղծել կոմունիստական, խորհրդային պետություն, որը մենք մտադիր ենք նույնիսկ մտցնել Խորհրդային Միության մեջ* (ծիծաղ, ծափահարություններ)։ *Եթե կան այդ հիմար պնդումներին հավատացող միամիտ մարդիկ, ապա նրանք բավականաչափ պետք է զարմանան, որ մենք չհետաձգեցինք 8-րդ համագումարը և չսպասեցինք, որ Սահմանադրության մեջ մտցնենք 12-րդ հանրապետությունը՝ իսպանական սոցիալիստական հանրապետությունը* (ծիծաղ, երկարատև ծափահարություններ)։ *Ասենք ի դեպ նրանց բացատրում են, թե մենք արդեն հույս չունենք կոմունիզմի համար նվաճելու ամբողջ Իսպանիան և պատրաստ ենք գոհանալու նրա կատալոնական անկյունով, ստեղծելով կատալո-*

նիայի անկախ հանրապետություն, վորպեսզի այնտեղից արշավ գործենք ամբողջ Յեվրոպայի վրա (ծիծաղ)։ Փոքրիկ յերեխաների կամ մեծ հիմարների համար ասված այս հեքիաթները (ծիծաղ, բուռն ծափահարություններ) տարածվում են ի հարկե այն նպատակով, վորպեսզի մըթագնեն իսպանական դեպքերի նկատմամբ մեր ցուցաբերած իսկական հետաքրքրության իմաստը։

Իսպանիայի տվյալ այս դեպքում մենք գործ ունենք ֆաշիզմի առաջին խոշոր յելույթի հետ՝ իր հայրենիքի սահմաններից դուրս։ Մենք գործ ունենք Իսպանիային բռնի կերպով, դրսից ֆաշիստական կարգ պատվաստելու փորձի հետ, ավինի, նռնակների և ռումբի ոգնությամբ իսպանական ժողովրդի վզին ֆաշիստական կառավարություն փաթաթելու փորձի հետ։ Յեթե այդ փորձը հաջողվեր, ապա վոչ մի յերաշխիք չէր լինի, վոր դա ավելի ընդարձակ մասշտաբով չէր կրկնվի մյուս պետությունների նկատմամբ։

Դարձյալ յեթե խոսքը վերաբերեր ֆաշիզմին՝ վորպես սոսկ ներքին քաղա-



քական-սոցիալական հատուկ ռեժիմի, ապա մեր վերաբերմունքն ավելի հանգիստ կլիներ։ Չէ՞ վոր Իսպանիայում գոյություն է ունեցել կոռուպցիոն միապետություն, վերջերս այնտեղ յեղել է գեներալ Պրիմո դը Ռիվերայի դիկտատուրան, բայց դա մեզ համեմատաբար քիչ է շփոթեցրել։ Սակայն այժմ խոսքը վերաբերում է այլ բանի՝ միջազգային բնույթ կրող յերևույթի, խաղաղության սպառնացող վտանգի իրական ուժեղացմանը, և միայն այդ բավական է մեր հետաքրքրությունն արդարացնելու համար։

## ԱԳՐԵՍԻԱՆ ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԾՐԱԳԻՐՆ Ե

Անհրաժեշտ է յելնել այն բանից, վոր ֆաշիզմը վոչ միայն հատուկ ներքին պետական ռեժիմ է, այլև միևնույն ժամանակ ագրեսիայի նախապատրաստումն է, մյուս պետությունների դեմ պատերազմելու նախապատրաստություն է։ Սա ֆաշիզմի մեր բնորոշումը չէ, այլ իր սեփական բնորոշումը։ Ֆաշիզմը բոլոր տանիքներից աղաղակում է իր ագրեսիվության մասին, և վոչ

միայն աղաղակում է, այլև տեղ-տեղ նաև իրականացրել է այդ: Ցես, ընկերնե՛ր, ձեզ խնդրում եմ վերհիշել այն, ինչ վոր ասացի առաջ ֆաշիզմի էության ու մեթոդների մասին: Ցես խոսեցի ֆաշիստական յերկրի ազգաբնակության դժգոհությունը ճնշելու յեղանակի մասին, բայց դա այսպես ասած՝ բացասողական ծրագիր է: Ֆաշիզմն ունի նաև դրական ծրագիր: Սոսկ մեխանիկական, ոստիկանական միջոցներով, ղնչակալներով կարելի յե միայն ժամանակավորապես փակել դժգոհների բերանը, բայց քանի վոր դրանով չեն վերանում դժգոհության պատճառները, իսկ այլ միջոցներով այդ պատճառները վերացնելու ընդունակ չէ ֆաշիզմը, ուստի գործի յեն դրվում այլ՝ այսպես կոչված հոգեվոր միջոցներ՝ դժգոհ քաղաքացիներին մշակելու, յես կասեյի, հիմարացնելու համար: Ֆաշիզմը, մենաշնորհ կերպով օգտագործելով մամուլը, հրատարակչությունները, ռադիոն և ագիտացիայի բոլոր այլ միջոցները, քաղաքացիներին ներշնչում է, թե իրենց ժողովուրդն ընտրյալ ժողովուրդ է, բոլոր ժողովուրդներից լավագույնը, մյուս վոչ լիարժեք ժողովուրդների վրա



իշխելու կոչված ժողովուրդ: Նրանց պատմում են իրենց ինչ վոր նշանավոր նախահայրերի մասին, հատուկ բարձրագույն ռասսայի պատկանելու մասին: Ինչպես վոր մի ժամանակ պրիմիտիվ մարդկանց, ասենք նաև փոքրիկ յերեխաներին վախեցնում եյին անտառի վոգիների, տնային վոգիների, Բենհեղղերուղի, սատանայի, դեվի, դեվիկների և այլ պիղծ ուժերի կարծեցյալ գոյությամբ, այնպես էլ ֆաշիստական յերկրի քաղաքացիներին վախեցնում են կոմունիստներով, մարքսիստներով, դեմոկրատներով, ջհուդ-մասոններով, վորոնց անհրաժեշտ է անպայման հաղթահարել ու վոչնչացնել՝ յերջանկության ձեռք բերելու համար: Գեղանկարվում են հրապուրիչ, ծաղկուն յերկրներ, ինչպես օրինակ՝ Ուկրաինան, Ուրալը և Սիբիրը (ծիծաղ), հումքով հարուստ գաղութներ: Միայն ցավն այն է, ասում են նրանց, վոր այդ գայթակղիչ յերկրներն ու գաղութները պատկանում են այլ ժողովուրդների: Հետեվաբար անհրաժեշտ է նվաճել, ուժով խլել դրանք, իսկ դրա համար անհրաժեշտ է սպառազինություն, դրա համար անհրաժեշտ է մեծ բանակ, հսկայական նավատորմ, մեծ ու բազմապիսի

սպառազինություն: Պարզ է, վոր քաղաքացիները պետք է լարեն իրենց բոլոր ուժերը, զրկանքներ կրեն և իրենց բոլոր միջոցները տան ֆաշիստական պետությանը՝ ռազմական հզորություն ստեղծելու համար: Այսպիսով ամբողջ ժողովուրդն որ—ավուր դաստիարակվում է ագրեսիայի վոգով և ագրեսիան բացեի բաց դառնում է ֆաշիստական պետության ծրագիրը, իսկ ինքը ֆաշիզմը դառնում է ամենասանձարձակ շովինիզմի ու իմպերիալիզմի փունկցիան:

Իմ ասածները կարծեմ միանգամայն բավական են արդարացնելու համար այն հետաքրքրությունը, վորով մենք, վորպես ժողովուրդների միջև անխախտ խաղաղություն պահպանելու անհողդողդ կողմնակից մի պետություն, հետևում ենք նոր յերկրներում ֆաշիզմը՝ վորպես ագրեսիայի գաղափարը կրողը՝ բռնի կերպով պատվաստելու փորձին: Բայց այդ դեռ բոլորը չէ:

Ֆաշիզմն իր ագրեսիվ նպատակների ըստեղծման նախապատրաստությունն իրագործում է վոչ միայն իր սպառազինությունն անչափ ուժեղացնելով, այլև նրանով, վոր միակողմանի կերպով ինքն իրեն



ազատում է իրեն կապող բոլոր միջազգային պարտավորություններից կամ պարզապես խախտում է դրանք, յերբ այդ ձեռնտու յե իրեն, խուսափում է խաղաղությունն ամրացնելու գործում վորևէ միջազգային համագործակցություն հաստատելուց, փորում է այդ խաղաղությունը պահպանելու կոչված միջազգային կազմակերպությունների հիմքը, կամպանիա յե մղում մյուս յերկրներն իրարից բաժանելու և անվտանգության կոլեկտիվ կազմակերպումը թույլ չըտալու համար: Նույն նպատակին է ծառայում նաև մյուս յերկրների մասին ստահոդ լուրեր տարածելը, վորի համար ստեղծվում է պրոպագանդի մինիստրություն կոչվող պետական հատուկ հիմնարկ, դրա գլուխն է կանգնեցվում մի մարդ, վորը— պետք է խոստովանել ճշմարտությունը— վորպես հերյուրանքներ և ամենաստահոդ լուրեր ստեղծող ու տարածող, հանդիսանում է, ինչպես ասում են անգլիացիները, պատշաճ մարդ՝ պատշաճ տեղում (ծափահարություններ, ծիծաղ):

Ֆաշիզմն իր ռազմատենչ նկրտումներն ուղղում է մասնավորապես խորհրդային պետության դեմ, խոսքով՝ իբրև թե այն

պատճառով, որ այնտեղ կոմունիստական գաղափարներ են դավանում, բայց իրոք այն պատճառով, որ խորհրդային պետությունն ինքն ըստ ինքյան հանդիսանում է ֆաշիզմի գիշատիչ ցանկությունների առարկան, ինչպես և հանդիսանում է խոչընդոտ՝ այլ ուղղություններով ֆաշիզմի ունեցած նվաճողական ձգտումների դեմ: Թեպետ ֆաշիզմն իշխանության գլուխ անցնելով հայտարարում էր, թե ինքը ձգտում է լավագույն հարաբերություններ պահպանել Խորհրդային Միության հետ և նույնիսկ վավերացրեց բարեկամության ու չեզոքության Բեռլինի խորհրդային-գերմանական պայմանագրի երկարաձգումը, բայց նա առանձնապես չսիրեց մեզ այն բանից հետո, երբ մենք առաջարկեցինք նրան երաշխիք տալ մեր ընդհանուր հարևանների անվտանգության ու ամբողջականության համար: Մեր դեմ ուղղված կատաղությունը միայն սաստկացավ այն բանից հետո, երբ մենք փոխադարձ օգնության պակտ կնքեցինք Ֆրանսիայի հետ, որին նա հայտարարել էր՝ իր ժառանգական թշնամին, ինչպես և մեր Ազգերի Լիգայի մեջ մտնե-



լուց ու այնտեղ մեր խաղաղության ծրագիրը ծավալելուց հետո:

Ֆաշիզմը, կատաղի ագիտացիայի միջոցով, մյուս երկրներում իր ունեցած վարձկան գործակալների ու քաղաքական բարեկամների օգնությամբ, փորձում է առավելագույն չափով օգտագործել այդ երկրներում գոյություն ունեցող նախապաշարումները՝ սոցիալիզմ կառուցող երկրի դեմ, նպատակ ունենալով նախ՝ քանդել այդ երկրների և Խորհրդային Միության՝ որպես Ազգերի Լիգայի անդամների՝ միջև գոյություն ունեցող կապերը, և երկրորդ՝ նպատակ ունենալով ֆինանսական օժանդակություն ստանալ իր սպառազինումներն ուժեղացնելու համար, սպառազինումներ, որոնք վոչ անպայման Խորհրդային Միության դեմ են ուղղվելու:

Ինձ կարող են հարց տալ՝ ինչո՞ւ չեն մեզ անհանգստացնում ֆաշիզմի ռազմական պատրաստությունները, եթե դրանք վոչ անպայման հակախորհրդային նշանակություն ունեն: Ես ինձ թույլ կտամ դրան պատասխանել մի անեկդոտով: Երբ մի մարդու, որի վրա հարձակվել էին հաչող շները, հարցրին, թե ինչո՞ւ չե վախե-

ցել, մի՞թե նա չգիտե, վոր հաչող շները չեն կծում, նա պատասխանեց, վոր այդ գիտե, բայց համոզված չէ, թե այդ գիտե՞ն արդյոք շները (ընդհանուր ծիծաղ)։ Մենք, բոլշևիկներս հաչող շներից չենք վախենում, բայց, այնուամենայնիվ, չենք վստահի շների գիտակցությանը (ընդհանուր ծիծաղ ամբողջ դահլիճում, ծափահարություններ) և ավելի լավ է զինվենք ավելի ամուր ու ավելի յերկար մահակով (ընդհանուր ծիծաղ, ծափահարություններ)։

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԻ ԲԼՈԿԸ

Դաշնակիցներ չգտնելով իր համար Ազգերի Լիգայի անդամների մեջ, վորոնք դեռ կանգնած են կոլեկտիվ անվտանգության գաղափարի հողի վրա, Ֆաշիզմը, մեկուսացած վիճակում մնալով, իր այդ մեկուսացածությունն արտաքուստ գունազարդելու համար դիմեց այն փոքրաթիվ յերկրներին, վորոնք գտնվում են նույնպիսի միայնության մեջ, բաժանում են նրա բացասական վերաբերմունքը դեպի Ազգերի Լիգան ու խաղաղության կազմակերպումը և նույն



պես հետապնդում են ագրեսիվ նպատակներ, և բլոկ հաստատեց նրանց հետ, իբր թե «միջազգային կոմունիստական վտանգի դեմ» պայքարելու համար։ Ճշգրտության համար նշեմ, վոր բլոկը կնքված է վոչ թե յերեք պետությունների միջև ընդհանուր կերպով, այլ Գերմանիայի ու Իտալիայի միջև առանձին և Գերմանիայի ու Ճապոնիայի միջև՝ առանձին։ Ի դեպ՝ մենք ստույգ տեղեկություններ ունենք, վոր Իտալիան ցանկանալով ինչ գնով էլ լինի ընթանալ իր նոր ուսուցիչ Գերմանիայի հետքերով, Ճապոնիային առաջարկեց իր հետ կնքել ճապոն—գերմանական համաձայնության հրապարակված մասի նման մի համաձայնություն։ Պարոն Մուսսոլինին, վորը տաս տարուց ավելի Խորհրդային Միության հետ վերին աստիճանի կոռեկտ հարաբերություններ է պահպանել, միջազգային կոմունիստական վտանգի մեջ համոզվեց միայն այն բանից հետո, յերբ Խորհրդային Միությունը լոյալ կերպով ու հետևողականորեն սկսեց մասնակցել Ազգերի Լիգայի ձեռնարկումներին՝ ընդդեմ Իտալիայի, վորը խախտել եր Ազգերի Լիգայի պակտը, ագրեսիա յեր կատարել և հափշ-

տակել Հաբեշստանը, իսկ այնուհետև՝ երբ Խորհրդային Միությունը հանդես եկավ Իսպանիայում ֆաշիստական ռազմական ինտերվենցիայի դեմ։

Կոմունիզմի դեմ պայքարելու այդ միջազգային համաձայնության հեղինակներն ըստ երևույթին չեն նկատում, թե ինչպիսի ծիծաղելի դրության մեջ են դնում իրենց, երբ խնդրում են իսկապես հավատալ այդ համաձայնությունների պաշտպանական բնույթին։ Նմանօրինակ ըմբռնմամբ այդ համաձայնությունները կարծես թե պետք է խոսեն այն մասին, որ գերմանական ֆաշիզմն իր երկրում ոչ միայն կոմունիզմն ու մարքսիզմը, այլև նույնիսկ դեմոկրատիզմը բոլոր հնարավոր միջոցներով արմատախիլ անելու չորս տարվա համերական ջանքերից հետո նորից կանգնած է երկրի ներսում կոմունիստական մեծագույն վտանգի առջև, որի դեմ ինքն ի վիճակի չէ պայքարել և հարկադրված է վորոնել տարաերկրյա օգնություն։ Ճիշտ այդպես էլ իտալական ֆաշիզմն իր 14-ամյա թագավորությունից և երկիրը կայսրության աստիճանին հասցնելուց հետո կանգնեց կոմունիստական վտանգի հան-



դեպ, որը նա կարող է հաղթահարել միայն գերմանական ու ճապոնական ֆաշիզմի հետ գործադրած միացյալ ջանքերով։ Ճապոնական կառավարությունը, որն անդուլ պայքար է մղում երկրի ներսում «վնասակար մտքերն» արմատախիլ անելու ուղղությամբ, չհասավ իր նպատակին և հարկադրված է իրեն օգնության կանչել տարաերկրյա վտանգանությանը։ Դուրս է գալիս, որ կարծես թե հենց ֆաշիստական երկրներն են խուճապով համակված՝ իրենց մոտ կոմունիզմի հաղթական անման հանդեպ։ Ոչ պակաս ծիծաղաշարժ են նաև այն նպատակները, որ իբր թե դնում են իրենց առջև այդ համաձայնությունները և որոնք կարող են լինել միայն հետևյալը,— ճապոնական կառավարությունը պարտավորվում է, հավանորեն, ժամանակին անզեկություն տալ գերմանական կառավարությանն այն դեպքում, երբ ճապոնական կոմունիստը վորոշի ապաստան վորոնել ազատ Գերմանիայում, և ընդհակառակը, գերմանական համակենտրոնացման ճամբարում (կամ բանտում) կոմունիստի համար տեղի սղություն լինելու դեպքում՝

ճապոնական և իտալական կառավարությունններն ըստ յերևույթին պարտավորվում են նրա համար բնակելի տարածություն գտնել իրենց բանտերում ու ճամբարներում (ծիծաղ), և ընդհակառակը: Պետք է յենթադրել, վոր համաձայնության յեկող բարձր կողմերը պարտավորվել են նաև «Կոմունիստական Ինտերնացիոնալի» և նմանորինակ այլ հրատարակությունների համարներ փոխ տալ իրար, կամ գուցե նրանք կոլեկտիվ ստեղծագործության սկզբունքների հիման վրա կստեղծեն այնպիսի մի թերթ, վորը պետք է ապացուցի Փաշիստական գաղափարների առավելությունը կոմունիստականի հանդեպ:

Դժվար է պատկերացնել, թե ինչպիսի այլ գործնական նպատակներ կարող են հետապնդել այդ յուրահատուկ միջազգային տրակտատները:

Զարմանալի չե, վոր դատելով մամուլի արձագանքներից, այդ տրակտատների վերաբերյալ հաղորդագրությունները բոլոր վոչ-Փաշիստական յերկրներում դիմավորվեցին դժվար զսպվող քաղաքավարի քրքիջով: Իրապես մարդիկ հրաժարվում են



հավատալ, վոր ճապոն-գերմանական համաձայնության հրապարակված յերկու կցկտուր հոդվածները կազմելու համար անհրաժեշտ եր 15 ամիս բանակցություններ վարել, վոր այդ բանակցություններ վարելը հնարավոր եր հանձնարարել անպայման ճապոնական կողմից մի զինվորական գեներալի, իսկ գերմանական կողմից՝ մի գերդիվանագետի, և վոր այդ բանակցությունները պետք է տեղի ունենային արտակարգ գաղտնի պայմաններում, գաղտնի՝ նույնիսկ գերմանական ու ճապոնական պաշտոնական դիվանագիտությունից:

Զարմանալի չե, յերբ յենթադրություններ են արվում, վոր ճապոն-գերմանական համաձայնությունը գրված է հատուկ ծածկագրով, վորի մեջ հակակոմունիզմը նշանակում է ամենևին վոչ այն, ինչ գրվում է բառարաններում, և վոր մարդիկ տարբեր ձևով են մեկնաբանում այդ ծածկագիրը: Ճապոնական իմպերիալիզմը Մանջուրիայում, օրինակ, յուրահատուկ ձևով է հասկացել ծածկագիրը և խախտելով յերկար ժամանակվա ընթացքում խորհրդային-մանջուրական սահմանում

թագավորող խաղաղությունը, յերկու ամսվա ընթացքում յերկու հարձակում գործեց խորհրդային տերիտորիայի վրա, բավականաչափ զգալի ուժերով: Նա հաշվի չառավ, վոր Բեռլինի համաձայնությունը բնավ չի խանգարում Կարմրադրոշ Հեռավոր Արևելյան բանակին՝ նրան տալու նույն պատասխանը, ինչ վոր տալիս եր նմանօրինակ հարձակումների ժամանակ նաև առաջ (ովացիա: Ամբողջ դահլիճը վոտքի յե կանգնում: Բացականչություններ՝ «Կեցցե՛ Հեռավոր Արևելյան կարմրադրոշ բանակը», «ուռա», «կեցցե՛ ընկեր Բլյուխերը»):

Պետք ե յենթադրել, վոր նա հասկացավ այդ բանը և հարձակումից հետո հաշվեց իր տարած վիրավորների ու խորհրդային տերիտորիայի վրա թողնված դիակների և սպառազինման առարկաների թիվը: Մենք հույս ունենք, վոր հակառակ Բեռլինի համաձայնության, Մանջուրիայում գտնվող ճապոնական զինվորականությունը չի մոռանա Հեռավոր Արևելյան Բանակի համոզիչ խնդիրը՝ «իրենց զբոսանքների համար սահմանից հեռու անկյուններ վորոնել» (ծիծաղ, ծափահարություններ):



## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ԿԵՂԾԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԽԱՐԴԱԽՈՒԹՅՈՒՆԸ

Ինչ վերաբերում ե հրապարակված ճապոն-գերմանական համաձայնությանը, ապա յես խորհուրդ կտայի իմաստ չվորոնել նրա մեջ, քանի վոր այդ համաձայնությունն իսկապես վոչ մի իմաստ չունի այն պարզ պատճառով, վոր մի այլ համաձայնության քողարկումն ե հանդիսանում միայն, մի համաձայնության, վորը միաժամանակ քննության ե առնվել, վավերացվել, հավանորեն նաև ստորագրվել ե, բայց վորը չի հրապարակվել և հրապարակման յենթակա չե: Յես մտածում եմ, դիտակցելով իմ խոսքերի ամբողջ պատասխանատվությունը, վոր հենց այդ գաղտնի փաստաթղթի մշակմանն են նվիրված յեղել ճապոնական զինվորական կցորդի և գերմանական գերդիվանագետի միջև տեղի ունեցած 15-ամսյա բանակցությունները, մի փաստաթուղթ, վորի մեջ կոմունիզմ բառը նույնիսկ չի ել հիշատակվում:

Վերջերս կնքված համաձայնությունների ագրեսիվ բնույթը բխում է արդեն այն բանից, վոր այդ համաձայնությանը մասնակցում են Ազգերի Լիգայից հեռացած յերեք պետություններ: Ճիշտ է, Իտալիան ձևականորեն դեռ մասնակցում է Ազգերի Լիգային, բայց նրա մասնակցությունն այն է, վոր— ինչպես պարոն Մուսսոլինին ինքը հենց վերջերս հրապարակորեն հայտարարեց— նա ի սրտե ցանկանում է Լիգայի շուտափույթ մահը: Այդ յերեք պետություններն էլ հայտնի յեն իրենց ագրեսիվությամբ և ուրիշի տերիտորիաների վրա հարձակումներ գործելով, պայքարում են կոլեկտիվ անվտանգության ու խաղաղության անբաժանելիության սկզբունքների դեմ: Հենց այդ հանգամանքը չարագուշակ բնույթ է տալիս այդ համաձայնություններին և մատնանշում է այն սպառնալիքը, վոր դրանք ներկայացնում են ընդհանուր խաղաղության, անվտանգության և շատ յերկրների շահերի համար:

Ի միջի այլոց ֆաշիստական յերկրների ակտիվությունը վերջին ժամանակներս յերևան բերեց նրանց մի քանի քաղաքա-



կան՝ իբր թե ծրագրային հայտարարությունների ու լոզունգների ամբողջ կեղծավորությունն ու կեղծիքը: Գերմանական ֆաշիզմը, որինակ, պնդում է, թե ինքն սկզբունքորեն դեմ է բոլոր տեսակի միջազգային դաշինքներին ու կոմբինացիաներին, բացի միմյանց վրա չհարձակվելու պայմանագրերից, այն էլ սահմանամերձ հարևանների հետ կնքված: Սակայն նա համաձայնություն կնքեց տասնյակ հազարավոր կիլոմետրերով իրենից հեռու գտնվող, մի քանի պետություններով իրենից բաժանված Ճապոնիայի հետ, և բնավ վոչ չհարձակվելու համաձայնություն: Գերմանական ֆաշիզմը յերդվում էր, թե ինքը պաշտպանում է պատերազմը լոկալիզացիայի յենթարկելու սկզբունքը: Բայց Ճապոնիայի հետ կնքված համաձայնությունը տենդենց ունի մեկ ցամաքում ծագած պատերազմը տարածելու ամենաքիչը յերկու, յեթե վոչ ավելի ցամաքների վրա: Իտալական ֆաշիզմը հաբեշական եքսպեդիցիայից հետո հայտարարում էր, վոր իր տերիտորյալ ախորժակները լիովին բավարարված են և վոր ինքն այսուհետեվ պատրաստ է համագործակցելու խաղա-

ղության կայունացման գործին, իսկ այժմ նա մանևրում է ագրեսիվ համաձայնությունների շրջանում: Չի չահի նաև ճապոնական կառավարության անկեղծության համարումը, մի կառավարություն, որը մեզ հավաստիացնում է Խորհրդային Միության հետ խաղաղ հարաբերություններ հաստատելու իր ձգտման մեջ, և մեզ դրդում է հանուն այդ բանի ընդառաջ գնալ իրեն հետաքրքրող մի քանի վիճելի հարցերի կարգավորման գործում, իսկ այժմ գաղտնի ագրեսիվ համաձայնություն է կնքել Գերմանիայի հետ: Ճապոնական կառավարությունը մեզ հավաստիացնում էր նաև այն բանում, որ իրեն առաջարկված՝ միմյանց վրա չհարձակվելու պակտը դեռ մինչև այժմ էլ քննության է առնվում իր կողմից և կարող է կնքվել բոլոր վիճելի հարցերը կարգավորելուն պես, իսկ այժմ նա այդպիսի պակտերի կնքումը կախման մեջ է դրել Գերմանիայի համաձայնությունից, նվազեցնելով իր արտաքին քաղաքականության ինքնուրույնությունը:

Հակադեմոկրատական, փաշիստական ագրեսիվ երկրներն իրենց խոսքն ասել են:



Նրանք ասացին, որ չեն ցանկանում մասնակցել խաղաղության կազմակերպման, բոլոր ժողովուրդների անվտանգությունն ապահովելու ընդհանուր միջազգային համագործակցությանը: Նրանք իրար հետևից մարտահրավեր են ուղղում խաղաղասեր, առաջին հերթին դեմոկրատական ժողովուրդներին: Խոսքն այժմ այդ ժողովուրդներին է պատկանում:

## ՄԵՐ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ՅԵՂԵԼ Է, ԿԱ ՅԵՎ ԿԼԻՆԻ ԻԲՐԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Խորհրդային Միությունը հիմք չի տեսնում իր քաղաքականությունը փոխելու, մի քաղաքականություն, որը եղել է, է և կլինի խաղաղության քաղաքականություն (յերկարատև ծափահարություններ): Նա այդպիսի խաղաղություն ցանկանում է իր համար և այլ ժողովուրդների համար, այդ պատճառով էլ առաջարկել է նրանց իր համագործակցությունը: Նա մյուսներից ոչ թե խոսք է սպասում խաղաղության մասին, այլ այդ խաղաղությունը կազմակերպելու ուղղությամբ

կիրառվող գործողություններ: Խորհրդային Միությունը, սակայն, խնդրահարույց չի լինում վո՛չ մի տեսակ դաշինքի, վո՛չ մի տեսակ բլոկի, վո՛չ մի տեսակ կոմբինացիայի: Նա հանգիստ կերպով թույլ կտա մյուս պետություններին կշռել ու գնահատել այն օգուտը, որ կարելի յե հանուն խաղաղության շահերի ձեռք բերել իր հետ ունեցած սերտ համագործակցությունից և հասկանալ, որ Խորհրդային Միությունը կարող է ավելի շատ տալ, քան թե ստանալ (ծափահարություններ):

Կնքված համաձայնությունները, վորոնց մասին մենք այստեղ խոսեցինք, վոչ մի բան չեն փոխում իրերի փաստական դրության մեջ: Վտանգ են ներկայացնում վոչ թե պայմանագրերը, վո՛չ թե նրանց տակ դրված ստորագրությունները, ինչպիսի արժեք էլ ունենան դրանք, այլ այնպիսի կառավարություններ ունեցող պետությունների առկայությունը, վորոնք իրենց արտաքին քաղաքականությունը կառուցում են դեպի խաղաղությունը տածած արհամարհանքի վրա, ագրեսիայի ու գիշատիչության սկզբունքների վրա և ձգտում են հափշտակել այն ամենը,



ինչ վոր հնարավոր է վերցնել: Մեզ, սակայն, այդ բանը չի վախեցնում, վորովհետև մենք չունենք վոչ մի բան, վորը կարելի լինի վերցնել (ծափահարություններ): Առավել մեծ վտանգի տակ են ընկել այլ պետություններ, այլ տերապետություններ:

Մեր անվտանգությունը կախված չէ թղթե փաստաթղթերից և արտաքին քաղաքական կոմբինացիաներից:

Խորհրդային Միությունն ինքնըստինքյան բավականաչափ ամուր է: Նա ամուր է իր բոլոր մասերի միաձուլությամբ, միակցությամբ ու կանոնավորությամբ, և այդ ամրությունն էլ ավելի կուժեղանա, յերբ կամրապնդվի նոր հիանալի ցեմենտով, ցեմենտ, վորը ներկայացնում է մեր համագումարի կողմից ընդունվող նոր Սահմանադրությունը: Խորհրդային Միությունն ամուր է իր տերիտորիայի վրա բնակվող բոլոր ժողովուրդների ձգտումների միասնությամբ և նրանց վոգևորող միասնական նպատակով: Նա ամուր է իր իսկական դեմոկրատիզմով: Նա ամուր է իր ամբողջ բնակչության գործունակ հայրենասիրության անընդհատ աճող վոգով:

Նա ամուր է իր սահմաններից դուրս միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր աշխատավորների կողմից իր հանդեպ ցուցաբերվող հսկայական համակրանքով և սիրով: Նա ամուր է կառավարական իշխանության կենտրոնացվածությամբ և ղեկավարող Կոմունիստական կուսակցության հեղինակությամբ (ծափահարություններ): Նա ամուր է իր ստախանովականներով, իր հերոս օդաչուներով և սպորտի բոլոր ընագավառների ռեկորդսմեններով: Նա ամուր է բազմահազար կոմյերիտմիության և խանդավառությամբ համակված ամբողջ մատաղ սերնդի կողմից դեպի պետությունն ու նրա իդեաները յեղած անսահման նվիրվածությամբ: Նա ամուր է իր անսպառ բնական հարստություններով, իր վիթխարի արդյունաբերության անընդհատ վերելքով ու հզորությամբ: Նա ամուր է հողագործության կոլտնտեսային ձևով: Նա ամուր է իր ուժի ու անպարտելիության գիտակցումով (ծափահարություններ): Նա ամուր է վերջապես իր պանծալի Կարմիր բանակով, ու Կարմիր նավատորմով, վորի գլուխն է կանգնած բոլորի կողմից սիրված զորավար ընկեր



Վորոշիլովը (բուռն ծափահարություններ: Բոլորը վոտքի յեն կանգնում և ջերմ. ովացիա սարքում ի պատիվ ընկեր Վորոշիլովի: Հուժկու «ուռա»-ն թնդում է դահլիճում):

Մենք համոզված ենք, վոր յեթե հասնի այն օրը, յերբ մեր բանակն ու նավատորմը հարկադրված լինեն հանդես գալու ի պաշտպանություն հայրենիքի, ապա ռազմական ստախանովականությունը, բազմապատկված այդպիսի դեպքերում առաջացող խանդավառությամբ, աշխարհին ցույց կտա անձնազոհ խիզախության, հերոսության, դյուցազնության ու պատերազմելու բոլշևիկյան հմտության՝ բոլոր ժամանակների ու ժողովուրդների պատմության մեջ չտեսնված որինակ (ծափահարություններ):

Յես համոզված եմ, և դուք բոլորդ նույնպես համոզված եք, ընկերնե՛ր, վոր մեր Խորհրդային Միությունը կկանգնի և հպարտ կերպով դեպի վեր կխոյանա՝ վորպես անմատչելի ամրոց, վորին զարնվելով կփշրվեն ֆաշիստական մոլեգնող ծովի գորշ ալիքները (բուռն ծափահարություններ): Այդ վստահությամբ ել

*ավելի է ամրապնդվում մեր մեջ այն բանի գիտակցությամբ, վոր այդ ամրոցի կառավարումը և նրա բանալիները գտնվում են այնպիսի մի պարետի ձեռքում, ինչպիսին է մեր պանծալի, մեծ առաջնորդ ընկեր Ստալինը* (բուռն, յերկարատեվ ծափահարություններ: Բոլորը վոտքի յեն կանգնում: Փոթորկալից ծափեր, ցնծագին բացականչություններ— «ուռա», «կեցցե ժողովուրդների առաջնորդ մեծ Ստալինը»):



# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՈՒՆԵՑՎԱԾՔԸ

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ, ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունն զբաղեցնում է* 21.353 *հազար քառակուսի կիլոմետր տարածություն: ԽՍՀՄ-ի զբաղեցրած տարածությունը կազմում է յերկրագնդի ամբողջ ցամաքի մեկ վեցերորդ մասը: ԽՍՀ Միության սահմանների ընդհանուր յերկարությունը կազմում է* 65 *հազար կիլոմետր, վորի յերկու յերրորդ մասը ծովային է և մի յերրորդը ցամաքային է:*



*ԽՍՀՄ-ի տերիտորիան շատ հարուստ է դետերով և լճերով:* 40 *ամենախոշորավոր*

գետերի յերկարությունը կազմում է 76·706 կիլոմետր: Խոշորագույն յոթը լճերը (Բայկալը, Բալխաշը, Իսսիկ-Կուլը, Լադոգայի, Օնեգի, Զուդսկոյե և Սևանի (Գյոկչայի) և յերկու ներքին ծովեր (Կասպից և Արալյան) բռնում են 580 հազար քառակուսի կիլոմետր տարածություն (100 հազար քառ. կիլոմետրով ավելի, քան Գերմանիայի ամբողջ տարածությունը):



Համարյա մի միլլիարդ հեկտար— այս է ԽՍՀՄ-ի անտառների տարածությունը: Այդ կազմում է անտառների համաշխարհային տարածության (3·030 միլլիոն հեկտար) մոտ մի յերրորդ մասը: ԽՍՀՄ-ի անտառներում փայտանյութի ընդհանուր պաշարը կազմում է 51 միլլիարդ խորանարդ մետր: Այդ քանակից հասուն և կտրելու պիտանի ծառերի պաշարը կազմում է 35,6 միլլիարդ խորանարդ մետր:



Վիթխարի յն տորֆի պաշարը Խորհրդային Միության տերիտորիայում: ԽՍՀ



Միության մեջ տորֆավայրերը բռնում են 57 միլլիոն հեկտար տարածություն՝ 77·477 միլլիոն տոնն տորֆի պաշարով: Այդ քանակից, հաշվառման յենթարկված տարածությունը կազմում է 12,6 միլլիոն հեկտար՝ 30,5 միլլիարդ տոնն պաշարով:



ԽՍՀՄ-ում կա 223,9 միլլիոն հեկտար վարելահող, 2 միլլիոն հեկտար տարածություն են բռնում մրգատու պարտեզները, բանջարանոցները և խաղողի այգիները:



ԽՍՀՄ-ի գետերի հաշվառման յենթարկված ընդհանուր եներգետիկ կարողությունը կազմում է 210 միլլիոն կիլովատ: ԽՍՀՄ-ն, իր հիդրո-եներգետիկ ռեսուրսների կարողությամբ, առաջին տեղն է գրավում աշխարհիս մյուս յերկրների մեջ: Ցարական Ռուսաստանը հազար կիլովատից ավելի կարողությամբ վոչ մի հիդրոկայան չուներ: Խորհրդային Միության մեջ կա ավելի քան 30 կայան՝ մոտ 1 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ: Կառուցվում և նախագծվում են հիդրոկա-

յաններ՝ մինչև 5,7 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ: Խորհրդային Միությունն ունի աշխարհիս խոշորագույն հիդրոկայաններից մեկը՝ Դնեպրովսկու հիդրոկայանը, վորի լիակատար կարողությունը կազմում է 558 հազար կիլովատ:

Քարածխի պաշարը ԽՍՀՄ-ում հաշվվում են 1·200 միլիարդ տոնն: Ածխի ասպարիզում ԽՍՀՄ-ն յերկրորդ տեղն է գրավում աշխարհում, Ամերիկայի Միացյալ Նահանգներից հետո:

Նավթի ընդհանուր պաշարը ԽՍՀՄ-ում կազմում է 3·200 միլիոն տոնն (համաշխարհային պաշարը կազմում է 9—10 միլիարդ տոնն): Այդպիսով ԽՍՀՄ-ին բաժին է ընկնում համաշխարհային պաշարի ավելի քան 30 տոկոսը: Նավթի ասպարիզում ԽՍՀՄ-ն առաջին տեղն է գրավում աշխարհում:

ԽՍՀՄ-ն իր ընդերքում ունի 55 միլիարդ տոնն կիզահերձաքար:

Յերկաթահանքերի պաշարը կազմում է ԽՍՀՄ-ում 10·612 միլիոն տոնն: Դրանցից հետախուզված է 8 միլիարդ տոնն: Յերկաթահանքերով ԽՍՀՄ-ն առաջին ու բացառիկ տեղ է գրավում աշխարհում:



ԽՍՀՄ-ի սահմաններում գտնվում է մարգանեցի համաշխարհային պաշարի յերեք քառորդը:

ԽՍՀՄ-ի ընդերքը պարունակում է միլիոնավոր տոնն պղինձ, արճիճ, ցինկ, անագ, նիկել:

Վոսկու հանույթով ԽՍՀՄ-ն յերկրորդ տեղը գրավեց աշխարհում:

ԽՍՀՄ-ի տերիտորիայում հայտաբերվեցին ու մշակվում են անդիկլի, վոլֆրամի, մոլիբդենի, մագնեզիում-ուրանո-ռադիումի հանքերի, մկնդեղի, բիսմուտի, անտիմոնի, բերիլլիյի, տանտալի, կոպալտի և այլ հազվագյուտ մետաղների հարուստ հանքավայրեր:

Բոքսիտների պաշարը (ալյումինիում արտադրելու հումք) ԽՍՀՄ-ում հաշվվում է 21·650 հազար տոնն:

Ապատիտների պաշարը հասնում է 2 միլիարդ տոննի:

ԽՍՀՄ-ն ունի ֆոսֆորիտների (հանքային պարարտանյութեր) համաշխարհային պաշարի 60 տոկոսը, ունի 18·370 միլիոն տոնն կալիում (դրանցից 6 միլիարդ տոննից ավելի՝ արդյունաբերական), բորատ-

ների (բորի աղ) ամենահարուստ հանքավայրեր, ծծմբի, անդալուզիտի, կորունդի, գրաֆիտի, ֆլուաշպատի, կերակրի աղի, ֆլյուսային կրաքարերի (սև մետալուրգիայի համար), մարմարների, գույնզգույն ակների, բազալտի, դիաբազի, հրակայուն և այլ արժեքավոր կավերի մեծարժեք հանքավայրեր:

Այդ բոլոր գանձերը թաղված են 8200 հազար քառակուսի կիլոմետր տարածության վրա, այսինքն բռնում են խորհրդային Միության ամբողջ տերիտորիայի 36—37 տոկոսը: Միության տերիտորիայի մնացած մեծ մասը յերկրաբանորեն դեռ չի ուսումնասիրված:



ԽՍՀՄ-ի անտառները, ծովերը, գետերը և լճերը հարուստ են մուշտակավոր կենդանիներով, ձկնեղենով և վորսի կենդանիներով: 1935 թվականին մթերվել է 174,6 միլիոն ռուբլու մորթեղեն:

1935 թվականին ԽՍՀՄ-ում վորսացվել է 13·540 հազար ցենտներ ձուկ, 1936 թվականի 10 ամսում ձկնորսությունը տվեց 12·480 հազար ցենտներ ձուկ:





ԽՍՀՄ-ի ազգաբնակությունը, 1933 թ. վերջերին վերաբերող տվյալներով, հաշվվում է 168 միլիոն հոգի, վորոնք պատկանում են 102 ազգությունների:



ԽՍՀՄ-ում կա 767 քաղաք, 712 բանվորական ավան և 1667 քաղաքային տիպի ավան:

1935 թվականի վերջերին քաղաքներում բնակարանային ֆոնդը կազմում էր 215 միլիոն քառակուսի մետր:



Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի սոցիալիստական ձեռնարկությունների հիմնական արտադրական ֆոնդերը 1928 թվականի 29,2 միլիարդ ռուբլուց, 1935 թվականին հասան 104,2 միլիարդ ռուբլու (1933 թ. գներով):

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

1936 թվականի հունվարի 1-ին ԽՍՀՄ-ում հաշվվում էր 574·064 արդյունաբերական

ձեռնարկություն, այդ թվից 61·428 խոշոր:

ԽՍՀՄ-ի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորների ու ծառայողների թիվը կազմում է ավելի քան 25 միլիոն հոգի: Խոշոր արդյունաբերության մեջ՝ 7065 հազար հոգի, շինարարության մեջ՝ 2203 հազար հոգի, խորհտնտեսություններում ու մեքենա-տրակտորային կայաններում՝ 2837 հազար հոգի:

Միմիայն խոշոր արդյունաբերության մեջ աշխատող ինժեներների և տեխնիկների թիվը կազմում է 548·500 հոգի:

1936 թվականի սկզբներին ԽՍՀՄ-ի արդյունաբերության մեջ կային կարևորագույն, վորոշող, հետևյալ տեսակի մեքենաները՝

36·943 շոգեկաթսա (3671 հազար քառակուսի մետր ջեռուցման մակարդակով), 1848 շոգեշարժ տուրբին (5583 հազար կիլովատ կարողությամբ), 16988 ելեկտրոգեներատոր (6264,9 հազար կիլովատ կարողությամբ), դրանցից 61,1 տոկոսը դրվել է 1929 թվականից հետո և 12,6 տոկո-



սը՝ 1934-ից մինչև 1936 թվականների ժամանակամիջոցում. 2430 ներհատիչ մեքենա (դրանցից 84,5 տոկոսը ձեռք է բերված 1929 թվականից հետո), 264·496 մետաղահատ դազգյահ, 36692 փայտահատ դազգյահ, 248·039 ջուլհակային դազգյահ (այդ թվից 19·590 ավտոմատիկ), 11·883 մուրճ ու մամուլ մետաղ կոփելու և չիկացած վիճակում չտամպելու համար, 30·491 մեքենա սառն վիճակում չտամպելու համար, 13·805 հալեցնող և գամող մեքենա, 18·292 ելեկտրոզոդիչ մեքենա (դրանցից 93,5 տոկոսը դրվել է 1929 թվականից հետո և 30 տոկոսը՝ 1934-ից մինչև 1936 թվականների ժամանակամիջոցին), 13·854 տրիկոտաժային ու սպիտակեղենի մեքենա, 64·842 տրանսպորտյոր, 10·913 կամրջային բեռնամբարձ մեքենա, 3889 սղոցող դազգյահ, 26351 գուլպայի մեքենա, 11834 կոմպրեսոր, 172 թղթի մեքենա և այլն:



ԽՍՀՄ-ում առ մեկն հունվարի 1936 թվականի կար 14·631 ելեկտրոկայան՝ 6·913·700 կիլովատ կարողությամբ: Այդ

թվից 106 շրջանային կայան, 4·518·200 կիլովատ կարողությամբ:

11 հազար և ավելի բարձր վոլտ լարվածություն ունեցող բարձրավոլտ հաղորդման գծերի տարածությունը կազմում եր 15·078 կիլոմետր:

1935 թվականին Գլավեներգոյի շրջանային կայանները տվել եյին 18,1 միլիարդ կիլովատ-ժամ ելեկտրոեներգիա, միմիայն 1936 թվականի 10 ամսում՝ 18,5 միլիարդ կիլովատ-ժամ եներգիա:

ԽՍՀՄ-ում մեծ չափերի յե հասել ջեռուցման ու ելեկտրական եներգիայի արտադրության համակցումը: Այնպիսի ջերմաելեկտրակայաններ (ՏԵՑ), ինչպիսիք են Բերեզնիկովոյինը, Ստալինյանը, Մոսկվայի առաջին կայանը և այլն, պատկանում են աշխարհիս ամենաառաջավոր ջերմաելեկտրակայաններին:



Այժմ ԽՍՀՄ-ն ունի 114 հալոց՝ 52·618 խորանարդ մետր ընդհանուր ոգտակար ծավալով, այդ թվից 800 խորանարդ մետրից ավելի ծավալ ունեցող 25 հալոց (24·483 խոր. մետր ընդհանուր ծավալով), 369 մարտենյան հնոց՝ հատակի 10·036 քա-



ռակուսի մետր ընդհանուր տարածությամբ և 319 մամլող դազգյահ (1936 թվականի սկզբներին)՝ հիմնական շարժիչների 355·000 կիլովատ ընդհանուր կարողությամբ:



ԽՍՀՄ-ի խոշոր արդյունաբերության 1935 թվականի ընդհանուր արտադրանքը արտահայտվեց 62·136 միլիոն ռուբլով (1926–27 տարվա անփոփոխ գներով): 1936 թվականի պլանը խոշոր արդյունաբերության արտադրանքը վորոշում է 77 միլիարդ ռուբլու գումարով, վոր նշանակում է 24 տոկոս աճում: Փաստորեն 1936 թվականի 10 ամսում միութենական և տեղական արդյունաբերության աճը կազմեց արդեն 32,1 տոկոս:



Խոշոր արդյունաբերության մեջ մի բանվորի եներգոզինվածությունը (այսինքն՝ մի մարդ—ժամին ընկնող մեխանիկական եներգիայի կիլովատ-ժամը) 1928 թվականի 1,30-ից 1935 թվականին հասավ 2,50-ի:

Խոշոր արդյունաբերության մեջ մի բանվորի եներգոզինվածությունը 1928 թվականի 0,69-ից 1935 թվականին հասավ 1,90-ի:



ՌՍՖՍՀ-ում ամեն օր արտադրվում է՝
66 մլ. կիլովատ-ժամ էլեկտրոէներգիա
350 հազար տոնն քարածուխ
89 հազար տոնն նավթ
55,5 հազար տոնն կոկս
83 հազար տոնն յերկաթահանք
39,5 հազար տոնն թուջ
48,8 հազար տոնն պողպատ
37,5 հազար տոնն մամլած մետաղ:



Ծանր արդյունաբերության հետ միասին, հսկայական ծավալ է ստացել նաև թեթև ու սննդի արդյունաբերությունը: 1936 թվականի 10 ամսում թեթև արդյունաբերության արտադրանքն ավելացավ 35,8 տոկոսով, իսկ սննդարդյունաբերության արտադրանքը՝ 32,3 տոկոսով՝ համեմատած 1935 թվականի համապատասխան ժամանակաշրջանի հետ:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

ԽՍՀՄ-ի ցանքերի տարածությունը 1936 թվականին կազմեց (նախնական տվյալներով) 133,7 միլիոն հեկտար. այդ թվից՝ հացահատիկայիններինը 102,2 միլիոն հեկ-



տար, տեխնիկական մշակույթներինը 10,8 միլիոն հեկտար և բանջարանոցային մշակույթներինը (ներառյալ նաև կարտոֆիլինը) 9,8 միլիոն հեկտար:



1935 թվականին ԽՍՀՄ-ում բերքը հավաքվել եր՝

| | | | |
|---|---|---|---|
| Հացահատիկ . . . | 901 | միլիոն | ցենտ. |
| Բամբակ . . . | 17,2 | » | » |
| Շաքարի ճակնդեղ | 162,1 | » | » |
| Թելատու վուշ . . . | 5,5 | » | » |
| Կարտոֆիլ . . . . | 697,4 | » | » |
| Բանջարեղեն (առանց կարտոֆիլի) . | 168,4 | » | » |
| Մրգեղեն . . . . . | 21,1 | » | » |
| Խաղող . . . . . . | 5,6 | » | » |
| Հաստապտուղ . . . | 0,8 | » | » |
| Վայրի մրգեղեն . | 5,0 | » | » |
| Թեյ . . . . . . . | 12,7 | » | » |

Գյուղատնտեսական մթերքների ընդհանուր բերքը 1936 թվականին, նախնական տվյալներով, 1935 թվականի բերքից պակաս չէ, իսկ առանձին տեսակների նկատ-

մամբ (բամբակ, վուշ, խաղող և այլն), զգալիորեն բարձր է:



Առ 1-ն նոյեմբերի 1936 թ. ԽՍՀՄ-ի տրակտորային պարկը բաղկացած էր 445,8 հազար մեքենայից: Կոմբայն կար 89·600 հատ, ամեն տեսակ հիմնական գյուղատնտեսական մեքենաների թիվը (տրակտորաքարշ գութաններ, տրակտորային կալսիչներ, տրակտորային ցանիչներ, խուրձկապ մեքենաներ, հնձող մեքենաներ, ճակնդեղ հանող, վուշ հանող և այլն մեքենաներ) հասնում էր 2·618·200-ի:



Մինչև 1936 թվականի բերքահավաքի կամպանիան մեքենատրակտորային կայանների թիվը հասել էր 4950-ի:

Խորհտնտեսությունների թիվը առ 1-ն հունվարի 1936 թվականի հասել էր 4·323-ի՝ 76·390 հազար հեկտար հողային ֆոնդով:

Գյուղացիական տնտեսությունների թիվն առ 1-ն հունվարի 1936 թվականի կազմում



է 20·413·900, որից կոլեկտիվացած տնտեսություններ 18·413·900, անհատական՝ 1·982·000:

Կոլտնտեսությունների թիվը՝ 244·456:



Առ 1-ն հունիսի 1936 թվականի ԽՍՀՄ-ում անասունների թիվը կազմում էր՝

| | | Այդ թվից անհատապես օգտագործվող |
|---|---|---|
| Ձի . . . . . | 16,6 միլ. գլուխ | 1,7 միլ. գլ. |
| Խոշոր եղջերավոր անասուն | 56,7 » » | 36,4 » » |
| Այծ և ոչխար | 73,7 » » | 39,1 » » |
| Խոզ . . | 30,4 » » | 19,2 » » |

Տնային թռչունների թիվը ԽՍՀՄ-ում 1936 թվականի սկզբին կազմում էր 178,5 միլիոն հատ:

Այս տարի առաջին անգամ սահմանվեց ուղտերի և եղջերուների թվի պլանը: Տարվա վերջին ուղտերի թիվը պետք է հասնի 271·500-ի, եղջերուների թիվը՝ 1·940·000 գլխի:

*ԽՍՀՄ-ի ընդհանուր ոգտագործման երկաթուղային ցանցի շահագործվող գիծը (լայն ու նեղ) առ 1-ն հոկտեմբերի 1936 թվականի կազմում էր 85·099 կիլոմետր:*

*Խորհրդային Միության երկաթուղիներում 1936 թվականի սկզբին կար 22·148 շոգեքարշ, էլեկտրաքարշ և ջերմաքարշ, 590·843 ապրանքատար վագոն, 32·928 մարդատար վագոն (առանց մետրոյի վագոնների):*



*1935 թվականի ընթացքում ԽՍՀՄ-ի երկաթուղիները փոխադրել էին 919·121 հազար ճամփորդ և 388·533 հազար տոնն բեռ:*

*1936 թվականի 9 ամսում փոխադրվեց 745·828 հազար ճամփորդ և 353·755 հազար տոնն բեռ:*



*ԽՍՀՄ-ի գետային նավատորմն առ 1-ն հունվարի 1936 թվականի ուներ 3·070 ինք-*



*նագնաց նավ և 6·507 վոչ ինքնագնաց նավ: Ծովային նավատորմն առ նույն թիվն ուներ 402 ապրանքա-մարդատար և բեռնատար նավ:*

*ԽՍՀՄ-ի ջրային ճանապարհներով 1935 թվականի ընթացքում փոխադրվել էր 43·503·200 ճամփորդ և 90·062·500 տոնն բեռ:*

*1936 թվականի 10 ամսում միմիայն գետային ուղիներով փոխադրվեց 43·666·300 ճամփորդ, իսկ բեռ փոխադրվեց ջրային ուղիներով 94·061 հազար տոնն:*



*ԽՍՀՄ-ում քաղաքացիական ավիացիայի բոլոր ոդային գծերի ընդհանուր երկարությունը 1936 թվականին կազմում է 90·600 կիլոմետր (1935 թվականին կազմում էր 80·000 կիլոմետր): Քաղաքացիական ոդային նավատորմի ինքնաթիռների ընդհանուր թիվը առ 1-ն հունվարի 1936 թվականի ավելացավ 34 անգամ՝ համեմատած առ 1-ն հունվարի 1930 թվականի քանակի հետ:*



*571·169 կիլոմետր երկարություն ունեն ԽՍՀՄ-ի միջքաղաքային հաղորդակ-*

ցուլթյան հեռախոսային, հեռագրային և կաբելային գծերը: Ներքաղաքային հեռագրական-հեռախոսային գծերի երկարությունը կազմում է 32·086 կիլոմետր:

## ԿՈՒԼՏՈՒՐԱ, ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ, ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

1936 թվականի սկզբին ԽՍՀՄ-ում կար ընդհանուր ուսուցման 164·081 դպրոց, գործարանային աշկերտության 1·797 դպրոց, 2·572 տեխնիկում, 716 բանֆակ, 595 բարձրագույն ուսումնական հաստատություն: Բոլոր ուսումնական հաստատություններում սովորողների թիվը հասավ 27·303 հազար հոգու:

Նախադպրոցական հիմնարկներում կար մոտ 6 միլիոն երեխա:

Գիտահետազոտական ինստիտուտների թիվը կազմում էր 794-ի՝ 37·200 հոգի գիտական աշխատողներով:



ԽՍՀՄ-ում կա 724 թատրոն ու կրկես (այդ թվից հատուկ հարմարեցված թատրոնական շենքով՝ 335), 28·600 կինոսարք



(այդ թվում նաև շրջիկ կինոները), Կապի ժողկոմատին պատկանող 67 ռադիոկայան և 6·860 տրանսլյացիոն-հանգույց:

1935 թվականին թատրոնների հանդիսատեսների ընդհանուր թիվը կազմում էր 715 միլիոն մարդ:

Ընթացիկ տարում ակմբային հիմնարկների ցանցը հասավ 71,7 հազարի, դրանցից 57·700-ը գյուղում:

Կուլտուրայի և հանգստյան պարկերի թիվը՝ 228:

1936 թվականի սկզբին կար 53·380 մասսայական գրադարան— 105·295 հազար օրինակ գրքի ֆոնդով: Կար 738 թանգարան (այդ թվից արվեստագիտական՝ 61):

1935 թվականին ԽՍՀՄ-ում լույս էր տեսել 10·000 թերթ՝ 35,7 միլիոն օրինակով: Տպվել էր 42·700 անուն գիրք՝ 99 լեզվով, 3 միլիարդ տպագրական թերթով: Լույս էր ընծայվել 2·100 անուն ժուռնալ՝ 48 լեզվով, 700 միլիոն օրինակով:



1935 թվականի վերջերին ԽՍՀՄ-ում կար մոտ 52·000 լրիվ բուժական ամբուլատորա-

յին հիմնարկ, ավելի քան 10·000 ատամնաբուժական կաբինետ, մոտ 400 շտապ օգնության կայան, 660 մալարիային կայան:

## ՀԻՄՆԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ, ԲՅՈՒՋԵ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՑԵԿԱՄՈՒՏ

1935 թվականին ԽՍՀՄ-ի ամբողջ ժողովրդական տնտեսության հիմնական շինարարության մեջ ներդրվել էր ավելի քան 24 միլիարդ ռուբլի: 1936 թվականի հիմնական շինարարության պլանը կազմում է 32·665 միլիոն ռուբլի: Ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերի կապիտալ շինարարության 1936 թվականի հատուկ ցուցակը պարունակում է ավելի քան 1000 օբյեկտ՝ սկսած Մոսկվայի մետրոպոլիտենից ու խոշոր էլեկտրոկայաններից, մինչև մակարոնի գործարանները և պահեստարանները:



1935 թվականին ամենագլխավոր շինանյութերից արտադրվել էր՝ ցեմենտ 4·470 հազար տոնն, աղյուս 5·700 միլիոն հատ,



կիր 2·700 հազար տոնն, ալեբաստր 800 հազար տոնն, պատուհանի ապակի 66,5 միլիոն քառակուսի մետր:

1936 թվականի 9 ամսում, վոչ լրիվ տվյալներով, արտադրվել է 4·340,6 հազար տոնն ցեմենտ, 4·190·500 հազար հատ աղյուս, 2·209·136 տոնն կիր, 659.690 տոնն ալեբաստր, 60,7 միլիոն քառակուսի մետր պատուհանի ապակի:

ԽՍՀ Միության 1936 թվականի միասնական պետական բյուջեն կազմված է 82·991 միլիոն ռուբլի յեկամուտով և նույնքան ծախսով:

1935 թվականին մանրածախ ապրանքաշրջանառությունը կազմել էր 80·470 միլիոն ռուբլի: 1936 թվականի պետական ու կոոպերատիվ առեվտրի մանրածախ ապրանքաշրջանառության պլանը ընդունված է 100 միլիարդ ռուբլով և, ըստ բոլոր տվյալների, կգերակատարվի:

1935 թվականի ժողովրդական յեկամտի ծավալը հասավ 66,5 միլիարդ ռուբլու (1926–27 տարվա գներով): Ժողովրդական յեկամտի միայն 1935 թվականի աճը կազմեց մոտ 10 միլիարդ ռուբլի և համարյա

հավասար է ժողովրդական յեկամտի 2-րդ հնգամյակի առաջին յերկու տարվա բացարձակ աճին (10,4 միլիարդ ռուբլի)։

1936 թվականին ՍՍՀՄ-ի ժողովրդական յեկամուտը պետք է հասնի 83,1 միլիարդ ռուբլու։

Ազգաբնակության աշխատանքային տնտեսումները (խնայդրամարկղներում) 1935 թվականին կազմել եյին 1·638 միլիոն ռուբլի։ Այժմ դրանք հասնում են 2·461 միլիոն ռուբլու։ Յերկրի նյութական հարստությունները և աշխատավորների բարեկեցության մակարդակը ՍՍՀՄ-ում օրեցօր աճում է։

«ՊՐԱՎԴԱ», 1936 թ. նոյեմբերի 24.





ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն – «Խորհրդ. Հայաստան»

Բացված է 1937 թ. բաժանորդագրություն

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ"-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին